ՀՈՒՆԻՍ
№ 6 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
35-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Մենք խմբագրություն հրավիրեցինք մի խումբ թղթակիցների և ասացինք.

— Գրեցեք ապագայի քաղաքի մասին: Տվեք մեկ գծագրեր ու լուսանկարներ, որպեսզի մեր պատանի ընթերցողներն իմանան, թե իրենք ինչպես են ապրելու կոմունիզմի ժամանակ և որպեսզի տարիներ հետո իրենք էլ կառուցեն այդպիսի քաղաքներ:

Եվ թղթակիցները մեկնեցին այդ կարևոր հանձնարարությունը կատարելու: Իսկ ո՞ւր գնացին նրանք:

## ԴԵՊԻ

Իհարկե, ընտրեցին տարբեր ուղղություններ: Ոմանք շտապեցին նորակառույցները, ոմանք էլ նախագծային ինստիտուտները կամ գրադարան... Ասենք՝ այդ ամենի մասին դուք ինքներդ կիմանաք, երբ կարդաք ապագայի քաղաքի մասին տպագրված նյութերը և նայեք նկարներին ու գծագրերին:

*Ապագայի քաղաքի միկրոշրջանը ըստ ճարտարապետ Գ. Ա. Գրադովի նախագծի: Նկարում՝ դուք տեսնում՝ եք բնակելի տներ, մանկապարտեզ-մսուրներ, գիշերօթիկ դպրոցներ և հասարակական կենտրոնի մի մասը:*

## ԱՊԱԳԱՅԻ ՔԱՂԱՔԸ

## ՃԱՐՏԱՐԱՊԵՏԻ ԱՇԽԱՏԱՍԵՆՅԱԿՈՒՄ

Սեղանի վրա փռված է մի վիթխարի քաղաք՝ շենքեր, ճանապարհներ, շատրվաններ, ծառեր, սպորտային հրապարակներ, նույնիսկ... մարդիկ: Միայն թե շատ փոքր չափսերով: Սպիտակ խալաթով ճարտարապետը այդ խաղալիք-տնակների մոտ ասես լիլիպուտների երկիրն ընկած Գուլիվերը լինի:

— Ապագայի քաղաքը վերացական հասկացողություն չէ,— պատմում է ճարտարապետը:— Նախագծերում տրված է նրա ճիշտ պատկերը: Այս շենքերը, որ մակետում մի քիչ նման են թռչող թիթեռի թևերի, շուտով կդառնան բետոնե հսկաներ: Այնտեղ մարդիկ կբնակվեն: Ուշադրություն դարձրեք քաղաքի հատակագծին, տները դասավորված են շատ ազատ: Նորակառույցներում դուք տեսած կլինեք նման թաղամասեր: Ապագան արդեն մտնում է մեր կյանքի ու կենցաղի մեջ: Շատ բաներ դեռևս չկան, և մենք ամենայն մանրամասնությամբ խորհում ենք դրանց մասին: Այս նախագծի վրա աշխատել են ոչ միայն ճարտարապետները, այլև ֆիզիկոսներ, կոնստրուկտորներ, բժիշկներ... Տեսնո՞ւմ եք, շենքերի կտուրներին նույնիսկ ջրավազաններ ու արևի լոգանք ընդունելու հարթակներ կան: Իսկ գետնի տակ գտնվում է մետրոն, ինչպես նաև՝ խողովակների մի վիթխարի ցանց. ջրի, հեռախոսի, էլեկտրականության...

Դու հիացմունքով նայում ես մակետին, իսկ ճարտարապետը ոգևորված շարունակում է.

— Բայց գլխավորը ծառերն են: Մի՛ կարմացեք, չէ՞ որ քաղաքո՛ւմ մաքուր ու առողջարար օդ չի լինի, եթե մեր «կանաչ բարեկամները» միայն կբոսայգիներում աճեն: Մարդկանց հարկավոր են թթվածնի հսկայական ֆաբրիկաներ: Դրա համար էլ մենք նախագծում ենք քաղաք-այգիներ: Այս միկրոշրջանի 10—14 հարկանի ընդամենը հինգ շենքում ապրելու է 10 հազար մարդ: Մնացած ամբողջ տարածությունը կզբաղեցնում են մեր «կանաչ բարեկամները»: Յուրաքանչյուր բնակելի շենքի մոտ կան ցածրիկ շինություններ, որոնք ծածկած սրահներով միանում են շենքին: Դրանք մանկապարտեզ-մսուրներն են: Երեխաները մշտապես ապրում են այնտեղ, և ծնողները ամեն օր կարող են այցելել նրանց: Ի միջի այլոց, մանկապարտեզ-մսուրի մուտքի մոտ կանգնած են պահակները». դրանք հատուկ լամպեր են, որոնց ճառագայթները սպանում են վնասակար բակտերիաներին: Սա էլ գիշերօթիկ դպրոցն է, որն ունի մի քանի շենք՝ ուսումնական, ննջարանային, ճաշարանային, արտադասարանական պարապմունքների և այլն: Երեխաներն ունեն իրենց պտղատու այգին, սպորտային հրապարակը: Աջ կողմում գտնվում են՝ ծմեռային այգին, ստադիոնը, կինո-թատրոնի ու ակումբի շենքը: Մի քիչ այն կողմ խանութներն են, սրճարանը, փոստը, կենցաղ-սպասարկման կոմբինատը, պոլիկլինիկան: Դրանք կառուցված են այն հաշվով, որ բնակելի շենքերից հեռու չլինեն: Սա հանդիսանում է միկրոշրջանի հասարակական կենտրոնը, որը տեղավորված է պարկի ներսում: Այս պարկը կից է մեկ ուրիշ,

Քսան տարվա ընթացքում այնքան տուն կկառուցվի Սովետական Միությունում, որ քաղաքների ու ավանների ամբողջ բնակելի տարածությունը կմեծանա մոտավորապես երկու անգամ:

Հիմա արդեն, յուրաքանչյուր հազար մարդու հաշվով, մենք կապիտալիստական ամենազարգացած երկրից՝ Ամերիկայից երկու անգամ ավելի ենք բնակարան կառուցում:

Բնակարանային շինարարության վրա մեր պետությունը ծախսում է իր բյուջեի գրեթե 30 տոկոսը:

Ամեն օր սովետական մարդիկ ստանում են 8 հազար բնակարան:

Եթե հնարավոր լիներ մի տեղ հավաքել Սովետական Միությունում մեկ տարվա կառուցած շենքերը, ապա կստացվեր Մոսկվայից ավելի մեծ քաղաք:

ավելի մեծ պարկի, որն զբաղեցնում է 20 հեկտար տարածություն: Մակետում դա չի երևում: Այս մեծ պարկը սահմանակից է մի քանի միկրոշրջանների և դառնում է արդեն նրանց ընդհանուր կենտրոնը: Այստեղ են կառուցված տասնմեկամյա դպրոցը, հիվանդանոցը, ունիվերմագը, տասը հազար տեղանոց ստադիոնը, պանորամային կինո-թատրոնը, մարդատար ավտոմեքենաների գարաժը և, վերջապես, ուղղաթիռի հրապարակը:

Ուզո՞ւմ եք մտնել բնակելի շենքերից մեկի ներսը: Խնդրեմ: Առաջին հարկում վեստիբյուլն է, սպասարկման բյուրոն, լվացքի և կոշկի վերանորոգման ընդունման կետերը, լուսանկարչական լաբորատորիան, հերթապահ բուֆետը: Ամբողջ երկրորդ հարկը ճաշարան է: Վերևում արդեն բնակարաններն են, որոնց երկու կողմերից ձգվող միջանցքները տանում են դեպի կենտրոնական վերելակը: Յուրաքանչյուր հարկում հանգստյան և բարեկամական հանդիպումների համար ընդարձակ տեղ է հատկացված: Բնակարանները նույնպես անսովոր դասավորություն ունեն: Բոլոր պահարանները պատերի մեջ են: Մահճակալները հեշտությամբ կարելի է դարձնել բազմոց կամ բազկաթոռ: Ջեռուցման մարտկոցներին փոխարինող սարքերը ձմռանը տաքացնում են օդը, իսկ ամռանը՝ զովացնում: Ըստ երևույթին, լուսամփոփները նույնպես անցյալի _ գիրկը կանցնեն, որովհետև լուսավորելու է... առաստաղը: Այո, առաստաղը: Դրա համար այն պետք է ծածկել կիսահաղորդիչի բյուրեղներով: Մի նորություն ևս. բնակարաններում խոհանոց չի լինի: Ո՞ւմ է խոհանոց հարկավոր, երբ շենքում կա լավ ճաշարան: Բայց չէ՞ որ հաճելի է մի բաժակ սուրճ խմել նաև տանը: Թեթև նախաճաշի ու ընթրիքի համար պետք կգան էլեկտրասարքավորումները: Յուրաքանչյուր բնակարան կունենա պատի սառնարան, ինչպես նաև զարմանալի հատկություններ ունեցող վառարան: Մթերքները կտաքանան ու կեփվեն ոչ թե դրսի կողմից, այլ՝ ներսից: Ընդհանրապես ապագայի քաղաքում ամեն մի ընտանիք կունենա ոչ միայն հարմարավետ բնակարան, այլև մշտական աթոռ կինոյում, ճաշարանում: Երեխաները հաստատուն տեղ կունենան ստադիոնում, լուսանկարչական լաբորատորիայում, մանկամսուրում և այլն:

Ճարտարապետը վերջացնում է իր զրույցը և երազուն հայացքով նայում մակետին: Նա նույնպես կուզենար հենց այսօր ապրել այդպիսի քաղաքում:




*Կարելի՞ է արդյոք պլաստմասսայից տուն կառուցել:*

*— Կարելի է,— պատասխանում են մասնագետները:*

*Լենինգրադում արդեն կառուցված է այդպիսի փորձնական բնակարան: Առաստաղը, պատերը, հատակը պատրաստված են ապակե երկտակ շերտիկներից: Դրանց արանքում դրվում է հատուկ տեսակի մի շերտ, որը թույլ չի տալիս, որ ներս թափանցեն ո՛չ ջերմություն, ո՛չ էլ ձայն: Խոհանոցը ... ** ... Խոռովակները, պաստառները, սանդուղքները նույնպես պլաստմասսայից են: Լուսամուտը զբաղեցնում է մի ամբողջ պատ և պատրաստված է օրգանական ապակուց, որի մոտ կարելի է նույնիսկ արևի լոգանք ընդունել, քանի որ նրա միջով թափանցում են ուլտրամանուշակագույն ճառագայթները:*

*Պլաստմասսայե տները չորս անգամ թեթև են աղյուսե տներից:*



# ՈՒՏՈՊԻՍՏՆԵՐԻ ԵՐԱԶԱՆՔԸ

*Գրադարանավարուհին գիտեր, որ մենք փաստեր ենք հավաքում ապագայի քաղաքի մասին: Բայց երբեք չպարմացավ, երբ մեր թղթակիցը մի գիրք խնդրեց, որը գրվել է գրեթե 450 տարի առաջ:*

*— Տվեք ինձ Թոմաս Մորի «Ուտոպիան»...*

*Թոմաս Մորը անգլիացի գիտնական-հումանիստ էր: Նա խորապես կարեկցում էր աշխատավոր ժողովրդին, որը տառապում էր հարուստների լծի տակ: Թոմաս Մորն ուզում էր, որ երկրի վրա փոխվի կյանքը: Որպեսզի ցույց տար, թե ինչպիսին է լինելու այն, նա մտքով ստեղծեց մի ֆանտաստիկ կղզի և նկարագրեց այնտեղի բնակիչների կյանքը, սովորույթն ու բարքերը:*

*Ուտոպիա կղզում չկային հարուստներ ու աղքատներ: Բոլորն ունեին հավասար իրավունքներ և բոլորն էլ աշխատում էին: Նրանք աշխատում էին օրը վեց ժամ, իսկ մնացած ազատ ժամանակը նվիրում էին գիտությանն ու արվեստին: Նրանք ապրում էին «ընդարձակ ու հոյակապ» քաղաքներում:*

*Թոմաս Մորը շատ հետևորդներ ունեցավ, որոնք կոչվեցին սոցիալիստ-ուտոպիստներ: Նրանք նույնպես երազում էին մի արդար հասարակարգ և իրենց աշխատություններում նկարագրում էին ապագայի գեղեցիկ քաղաքների պատկերը:*

*Ահա նշանավոր մտածող Կամպանելլայի «Արևի քաղաքը» գիրքը, որը նա գրել է բանտի ցուրտ ու մռայլ պատերի ներսում: Նրան բանտ էին նետել Իտալիային ճնշող իսպանական թագավորի դեմ ժողովրդական ապստամբություն նախապատրաստելու համար:*




*«Գեղեցիկ, կանաչի մեջ թաղված փողոցներ, ընդարձակ, լուսավոր սենյակներ, մարմարե սանդուղքներ, կրոսասրահներ... Արևի քաղաքի բընակիչները ազատ մարդիկ են, ամեն ոք զբաղված է օգտակար գործով և այն պատվով է կատարում: Այս քաղաքում ամեն ինչ մարդու համար է, ծառայում է մարդուն: Ստրուկ ու տեր չկա: Ազատ աշխատանքը չըտեսնված ծաղկում է բերել գիտությանը, տեխնիկային, արվեստին: Կանայք ազատված են տնտեսության ծանր հոգսից...»*

*«Արևի քաղաքը» դա երջանկության քաղաքն է: Կամպանելլան այսպես էր պատկերացնում ապագան:*

*Ապագայի քաղաքների ու տների մասին ուտոպիստները գրել են շատ մանրամասնորեն: Նրանց գրքերում կան նաև պլաններ, նկարներ ու գծագրեր, որոնք նայվում են մեծ հետաքրքրությամբ: Իհարկե, այժմ դրանք շատ պարզունակ են, որովհետև ուտոպիստները չգիտեին, թե ինչպես պետք է իրականացնել իրենց երազանքը, ինչ ճանապարհով պետք է ժողովրդին փրկել հարուստների լծից: Բայց Արևի երջանիկ քաղաքի մասին եղած այդ հոյակապ երազանքը ապրեց: Եվ երկրագնդի վրա ծնունդ առավ այդ քաղաքը. միայն թե ավելի լավ, քան ուտոպիստների անիրականալի երազանքներում:*

## ԻՆՖՐԱԿԱՐՄԻՐ «ՎԱՌԱՐԱՆ»

Մի փոքր սենյակ տաքացնելու համար ջեռուցման մեկ մարտկոցն էլ բավական է: Իսկ ինչպե՞ս տաքացնել վիթխարի ցեխը կամ ծածկած ստադիոնը: Դրա համար ինժեներները ստեղծել են ինֆրակարմիր հատուկ հարմարանքներ: Դրանք օդը տաքացնում են ոչ թե իրենց մակերեսով, ինչպես դա մարտկոցներն ու վառարաններն են անում, այլ՝ ինֆրակարմիր ճառագայթներով: Անտեսանելի ճառագայթների հոսանքը սփռվում է շենքով մեկ և օդին հաղորդում իր ջերմությունը:

## ԾԻԱԾԱՆԱԳՈՒՅՆ ՇԵՆՔԵՐ

Քաղաքը տխուր տեսք է ունենում, երբ բոլոր տները գորշ են: Ա՜յ թե շենքերն էլ ծիածանի նման տարբեր գույնի լինեին: Ի՞նչ կա որ. շուտով դա էլ կլինի: Նոր քաղաքներում ու նորակառույց թաղամասերում կանաչ կբոսայգիների ու պուրակների մեջ վեր կխոյանան կենսուրախ տներ. վարդագույն, դեղին, երկնագույն: Կլինեն նաև երփներանգ մայթեր, կապտավուն խըճուղիներ ու նարնջագույն կամուրջներ: Եվ որ ամենահետաքրքրականն է՝ դրա համար ներկարարներ պետք չեն: Եվ ընդհանրապես ոչ մի ներկարար չի երևա շինարարական հրապարակներում: Բանն այն է, որ ինժեներները գտել են գունավոր բետոն պատրաստելու եղանակը: Ո՛չ արևը և ո՛չ էլ անձրևն ու ձյունը չեն կարող գունաթափել նոր եղանակով ստացվող բետոնի գույնը:

# Մեկ օր Լուսնաշենում



(Փոխադրություն ՅՈՒ. ԶԵՐՉԱՆԻՆՈՎԻՑ)

Նկ. ԱԻԴԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

Անկեղծ ասած, ես դեռ քնած էի, երբ սենյակում «աքաղաղը» ծուղրուղու կանչեց: «Աքաղաղի» սլաքը ես դրել էի ժամը վեցի վրա: Աչքերս բաց արի՝ արդեն Լուսնաշենում էի: Մեկ օրում ես 1963 թվականից փոխադրվել էի... 1990 թվականը:

Դուք գուցե հարցնեք՝ մի՞թե դա հնարավոր է: Ուրիշ բան է գնալ Արտեկ կամ Աֆրիկա, ուղևորվել Մուրմանսկ կամ Հարավային բևեռ... Բայց Լուսնաշեն քաղաք առայժմ գոյություն չունի, չկա նաև այն կայարանը, որտեղից գնացքներ են գնում Լուսնաշեն:

Իսկ ես գնացքով չգնացի: Հետո կպատմեմ, թե ինչպես ընկա այնտեղ:

...Եվ ահա ես արթնացա: Արթնացա մի քաղաքում, որն իր անունն ստացել էր ի պատիվ Լուսին կատարած սովետական առաջին էքսպեդիցիայի:

— Բարի լո՜ւյս,— ասաց գործարանային «աքաղաղը», որն ինձ արթնացրել էր իր ծուղրուղուով:

— Բարի լո՜ւյս, աքաղա՛ղ,— ասացի ես:— Մի՞թե դու կարող ես նաև խոսել:

— Բարի լո՜ւյս,— կրկնեց «աքաղաղը»:

Այդ պահին ներս մտան Հրայրն ու Գոհարը:

— «Պիոներ» ամսագրի թղթակիցը դո՞ւք եք,— հարցրեց Հրայրը:

— Այո՛, ես 1963 թվականից եմ եկել:

— Ինչ հետաքրքի՜ր է,— ասաց Գոհարը:

Հրայրը սովորում էր հինգերորդ դասարանում, իսկ Գոհարը՝ չորրորդ: Հրայրը ամեն բան գիտեր. ինչ գույն ունեն ամպերը Վեներայի վրա, կոկորդիլոսը քանի ատամ ունի... Իսկ Գոհարը գիտեր կառնավալային դիմակներ պատրաստել: Իր դիմակներից մեկն էլ նա ինձ էր բերել:

— Վերցրե՛ք, այսօր կիրակի է և երեկոյան կառնավալ է լինելու:

Դա հարցական նշանի մի մեծ դիմակ էր:

— Այդ դիմակը տվեցի,— բացատրեց Գոհարը,— որովհետև դուք թղթակից եք և ձեր մասնագիտությունն է՝ անընդհատ հարցեր տալ:

Հետո մենք քայլեցինք բարձր, գույնզգույն շենքերի մոտի ծառուղով: Այդ շենքերից մեկում ապրում էին Հրայրի ծնողները: Քիչ հեռու սպորտային հրապարակն էր, որտեղ մեծերը վոլեյբոլ էին խաղում: Հրայրը մնում էր գիշերօթիկում:

Մենք շրջանցեցինք թենիսի հրապարակը և կանգ առանք շատրվանի մոտ: Չորս կողմը ծառեր ու ծաղիկներ էին: Ծիծաղելի կլիներ, եթե Լուսնաշենում ապրողները մտածեին ամառանոց գնալու մասին: Մենք ամառանոց ենք գնում, որպեսզի կտրվենք քաղաքի աղմուկից, փոշուց ու բենզինի հոտից, իսկ ես Լուսնաշենում ավտոմեքենայի դեռ չէի հանդիպել...

— Մի՞թե այստեղ բոլորը ոտքով են քայլում:

— Ո՛չ, էլեկտրոմոբիլներ շատ կան,— պատասխանեց Հրայրը:— Ուզո՞ւմ եք մեքենայով զբոսնել: Միայն թե ես կնախընտրեի ճոպանուղին:

Պարզվեց, որ Լուսնաշենում չի թույլատրվում մեքենաներով մտնել բնակելի թաղամասերը: Մեքենաների համար հատուկ ճանապարհ կա քաղաքի շուրջը: Էլեկտրոմոբիլով կարելի է գալ մինչև հասարակական կենտրոնը, որը գտնվում է երկու շրջանի սահմաններում: Բայց ինչո՞ւ էլեկտրոմոբիլով, երբ կա ճոպանուղի: Պատկերացրեք մետրոյի վագոն, որը պողպատե ճոպանից կախված՝ անաղմուկ սահում է օդի միջով: Սա մետրոյից էլ արագ է, ուր մնաց մեքենայից: Ցանկացած տանից ճոպանուղու կայան հասնելու համար հարկավոր է ոտքով գնալ ընդամենը 5—7 րոպե:

— Էլեկտրոմոբիլով լավ է գնալ անտառ սունկ հավաքելու,— ասաց Հրայրը:

— Իսկ քո հայրը էլեկտրոմոբիլ ունի՞,— հարցրի ես: Հրայրը հարցիս հարցով պատասխանեց.

— Դուք փիղ ունե՞ք:

— Փի՞ղ: Փիղն ինչների՞ս է պետք:

— Իսկ մեր ինչի՞ն է պետք ունենալ սեփական ավտոմեքենա,— ասաց Հրայրը,— Լուսնաշենում էլեկտրոմոբիլ ոչ ոք չունի, վերցնում ենք պարկից, երբ պետք է գալիս:

Ծառուղին մեզ տարավ դեպի մի լայն, ապակե շենք: Այնտեղ տեղավորված էին ջերմոցներն ու ցուցադրական տաղավարները: Մենք անցանք այդ հետաքրքիր շենքի մոտով և գնացինք դեպի ճոպանուղու կայանը: Այստեղ

մեկ մոտեցավ մի տղա: Նա հարցական նայեց Հրայրին, իսկ Հրայրը հարցական նայեց ինձ: Այդ ժամանակ Գոհարն ասաց.

— Դա շատ մեծ գաղտնիք է: Բայց դուք ոչ ոքի չեք ասի, չէ՞:

— Միայն 1963 թվականի երեխաներին:

— Եվ ուրիշ ոչ ոքի,— ասաց Հրայրը և, դիմելով տղային, ավելացրեց.— Խոսի՛ր, Սուրե՛ն:

— Հերթապահությունը հանձնեցի առավոտյան յոթին,— հաղորդեց Սուրենը,— Բլիթն արդեն արթնացել էր, ջուր խմել ու կերել համարյա մեկ տյուբիկ մածուկ: Հետո էլ դեռ մատս կծեց:

— Երևի բարկացրել ես Բլիթին,— ասաց Հրայրը:

— Ո՛չ: Նա կծեց հենց այնպես, հետաքրքրության համար:

Սուրենի գնալուց հետո Գոհարն ասաց.

— Բլիթը սարյակ է, առաջին սարյակը, որ պետք է ապրի Լուսնի վրա:

— Ինչո՞ւ եք զարմանում,— ավելացրեց Հրայրը,— կարծում եք, թե Լուսնի վրա սարյակ պետք չէ՞: Նույնիսկ շա՛տ է պետք:

Ես գիտեի, որ Լուսնի վրա արդեն աշխատում է առաջին սովետական աստղադիտարանը: Լսել էի Լուսինը նվաճողների պատվերով տրված համերգը, լրագրերում կարդացել էի Լուսնի և Անտարկտիդայի Միրնի քաղաքի միջև արդեն երկրորդ տարին շարունակվող շախմատային մրցության մասին:



— Առանց թռչունների ապրելը վատ է,— շարունակեց Հրայրը:— Անտարկտիդայում գոնե պինգվիններ կան, իսկ Լուսնի վրա պինգվին էլ չկա: Եվ ահա մենք որոշեցինք մեր Բլիթին ուղարկել Լուսին: Տարիներ հետո, երբ այնտեղ արդեն շատ սարյակներ կլինեն, մեր Բլիթի բույնը կհամարվի տեսարժան վայր:

— Է՛հ, այդտեղ ի՞նչ գաղտնիք կա որ,— ասացի ես:— Դուք ինչո՞ւ եք թաքցնում, որ Բլիթին ուղարկում եք Լուսին:

Եվ Հրայրն ամեն ինչ բացատրեց ինձ.

— Բանն այն է, որ Բլիթը դեռևս պատրաստ չէ տիեզերական նավի թռիչքին: Առայժմ մենք վարժեցնում ենք: Սովորեցնում ենք դիմանալ անկշռայնության վիճակին: Բացի այդ, Լուսնի վրա ո՛չ որդ կա, ո՛չ թրթուր:

Մենք Բլիթին սովորեցնում ենք մածուկ ուտել: Բա՛յց մեր սարյակը, որդերից հետո, ամենից շատ սիրում է հաց ուտել, հատկապես օղաբլիթ: Դրա համար էլ անունը Բլիթ ենք դրել:

* * *

Ճոպանուղու երկնագույն վագոնը մեզ դուրս բերեց մի մեծ զբոսայգի, որը կոչվում էր «Կանաչ ճառագայթ»: Մայիսյան արևոտ օր էր: Ես շատ զարմացա, երբ այստեղ հանդիպեցի երկու տղայի, որոնք հագել էին բաճկոններ և դրելականջավոր գլխարկներ:

— Ձնագնդի պիտի խաղան,— ասաց Գոհարը:

«Ծիծաղում է վրաս»— մտածեցի ես, բայց, առանց ինձ մատնելու, հարցրի.

— Գուցե մե՞նք էլ ձնագնդի կխաղանք: Վաղուց է, չեմ խաղացել. տասը տարի կլինի:

— Տանել չեմ կարողանում այն մեծերին, քրոնք ձևացնում են, թե իրենց համար ձնագնդի խաղալը հետաքրքիր չէ,— ասաց Հրայրը:— Ես ու հայրս միշտ խաղում ենք. թե՛ ձմռանը և թե՛ ամռանը:

Հրայրը միանգամայն լուրջ էր խոսում:

Մենք անցանք արվեստի տան մոտով և կանգ առանք գմբեթավոր մի մեծ շենքի առաջ: Նրա թափանցիկ պատերի միջից ես տեսա, թե ինչպես երեխաներն ու չափահաս մարդիկ դահուկ էին քշում և ձնագնդի խաղում: Նրանց գլխավերևում պտույտ էին տալիս ձյան փաթիլները: Այնտեղ ձմեռ էր:

— Ես էլ կխաղայի,— ասաց Գոհարը,— բայց հարկ կլինի գնալ հագուստ բերելու: Իսկ գարնանային զգեստով չի կարելի մտնել արհեստական եղանակի դահլիճը:

Հրայրը ինձ մեկ ուրիշ դահլիճ էլ ցույց տվեց: Մարդկանց ձեռքերին գործիքներ կային: Եվ ես նորից զարմացա:

— Արհեստանո՞ց է: Բայց չէ՞ որ այսօր հանգստյան օր է...

— Մեզ մոտ այդպես են հանգստանում,—բացատրեց Հրայրը:

Պարզվում է, որ Լուսնաշենում ամբողջ ծանր աշխատանքը կատարում են մեքենաները: Մնում է միայն հրամաններ տալ մեքենային, կազմել ծրագիրը, և մեքենան ինքը կանի բոլորը: Եվ ահա, որպեսզի վարժեցնեն իրենց

ձեռքերը, թարմ ուժեր հավաքեն, Լուսնաշենի բնակիչները հանգստի ժամերին գալիս են ֆիզիկական աշխատանքի արհեստանոցները:

* * *

Իրիկնանում էր: «Սատուրնի օղակ» կաֆեում տարածվել էր մեղմ երաժշտություն: Գոհարը կերավ մանրածավարի շիլա, իսկ ես ու Հրայրը սուրճ խմեցինք:

— Դուք ե՞րբ եք մեկնելու,— հարցրեց Հրայրը:

— Կառնավալից հետո:



— Ես հենց նոր տեսա անցյալի թանգարանի դիրեկտորին: Եթե դուք կարողանայիք ելույթ ունենալ նրա թանգարանում...— Եվ Հրայրը հարցական նայեց ինձ:

— Դա շատ հետաքրքիր կլիներ,— ավելացրեց Գոհարը:— Թանգարանում մամոնտի խրտվիլակ կա, հետո բանալիների մի ամբողջ հավաքածու...

— Ի՞նչ բանալիների,— հարցրի ես:

— Դե, տարբեր տեսակի կողպեքների: Գիտե՞ք ինչ, մի տեսակի խաղ կա, որ կոչվում է տափկնոցի: Առաջ մեծերն էլ տափկնոցի են խաղացել. իրարից թաքնվել են կողպած դռների հետևում, թաքցնելով նաև ունեցած իրերը: Ծիծաղելի է, չէ՞:

— Իհարկե, ծիծաղելի է,— պատասխանեցի ես Գոհարին և... գրպանիցս հանեցի Երևանում եղած բնակարանիս բանալին:

— Ուրեմն դուք գիտե՞ք մեր թանգարանի մասին,— բացականչեց Հրայրը:— Դուք թանգարանի համա՞ր եք բերել այդ բանալին:

— Իհարկե,— մի քիչ շփոթվելով ասացի ես և բանալին տվեցի Հրայրին:

«Կանաչ ճառագայթ» կբոսայգում գնալով ավելի ու ավելի շատ մարդիկ էին հավաքվում: Լուսնաշենի բնակիչները, թե՛ մեծերը և թե՛ երեխաները, սիրում են միասին լինել: Իհարկե, դասեր պատրաստել կամ ոտանավոր հորինել միասին հնարավոր չէ: Բայց ինչքա՜ն լավ է պատ երեկոներին միասին կբոսնել «Կանաչ ճառագայթում»: Քո կողքին ընկերներդ են և ինչքա՜ն շատ են նրանք. ամբողջ քաղաքն է:

Եվ ես հագնելով Գոհարի տված դիմակը, գնացի կառնավալի: Քաղաքի վրա փայլում էր արհեստական լուսինը: Դիմակները պարում էին, երգում: Ի՜նչ դիմակներ ասես, որ չկային. տիեզերագնացի, մարսեցու, բևեռայինի...

«Կանաչ ճառագայթը» և քաղաքի մյուս կբոսայգիներն ու պուրակները հատվում էին մի մեծ հրապարակում: Դա ելույթների և տոնահանդեսների հրապարակն էր: Այն շրջապատում էին Սովետների պալատը, Հուշաթանգարանը, թատրոնը... Բայց այդ երեկո արտիստները ներկայացում էին տալիս ոչ թե թատրոնում, այլ ուղղակի հրապարակում: Ամբողջ հրապարակը դարձել էր բեմ:

Տոնական կառնավալային ներկայացմանը մասնակցում էր ամբողջ Լուսնաշենը:

Այստեղ էլ ես բաժանվեցի Հրայրից ու Գոհարից:

— Ես պետք է վաղը առավոտյան աշխատանքի ներկայանամ,— ասացի ես:— Որպեսզի չուշանամ, ժամանակն է, որ վերադառնամ 1963 թվականը:

— Կրկին եկեք,— ասաց Գոհարը:

— Եկեք Բլիթին ճանապարհ դնենք դեպի Լուսին,— ավելացրեց Հրայրը:

— Իհարկե,— ասացի ես:— Իհարկե, կգամ:

— Տիեզերքի պապիկ Գագարինին հաղորդեք մեր պիոներական ողջույնը,— հետևից գոռաց Գոհարը:

* * *

Ներեցեք, որ ես շատ քիչ բան պատմեցի Լուսնաշենի մասին: Ես չհասցրի բոլորը նայել: Ես չեղա դպրոցներում ու գործարաններում, նույնիսկ Բլիթ սարյակին չկարողացա տեսնել:

Բայց ոչինչ: Մյուս անգամ: Ես դեռ էլի կլինեմ այնտեղ: Եվ դուք էլ կլինեք, երեխանե՛ր: Հրայրն ու Գոհարը ձեզ սպասում են:

Իսկ ինչպե՞ս գնալ Լուսնաշեն, որը դեռևս չկա քարտեզի վրա: Մի՞թե դա բացատրելու հարկ կա: Չէ՞ որ մենք, երեխանե՛ր, ապրում ենք այնպիսի մի ժամանակ, երբ պարզապես անհրաժեշտ է մտքով ճանապարհորդություն կատարել դեպի ապագան: Այնպիսի անհրաժեշտություն, ինչպես օրինակ դպրոց գնալը կամ առավոտյան լիցքային վարժությունը: Յոթ սարի հետևում չեն գտնվում Լուսնաշենն ու մյուս հրաշալի քաղաքները: Դուք ինքներդ եք դրանք կառուցելու, երբ մեծանաք:

## ԱՐԵԳԱԿ–ԼԱՄՊԸ

*Սովետական ինժեներների ստեղծած այս լամպը կոչվում է «Սիրիուս»—երկնակամարի ամենապայծառ աստղի անունով: Առաջին հայացքից «Սիրիուսը» ոչնչով չի տարբերվում ցերեկային լույսի սովորական լամպերից. կվարցե ապակու մեկ մետրանոց խողովակ է, ծայրերին՝ վոլֆրամե էլեկտրոդներ:*

*Հոսանքը միացնելուն պես էլեկտրոդների միջև լցված գազը սկսում է լույս արձակել, որն իր պայծառությամբ չի զիջում արևի լույսին: Գազի ջերմությունը գրեթե մոտենում է արևի ջերմությանը՝ վեց հազար աստիճան: Որպեսզի խողովակը չհալչի, այն դրված է մեկ ուրիշ, դարձյալ կվարցե ապակու խողովակի մեջ, և դրանց արանքով բաց է թողնվում զովացնող ջուր:*

*«Սիրիուսը» ոչ մոդել է և ոչ էլ նախագիծ: Այն արդեն տեղադրված է Մոսկվայում, ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում: Դա ամենահզոր արհեստական լուսատուն է աշխարհում: 100 վատտանոց 20 հազար էլեկտրական լամպ չի տալիս այնքան լույս, որքան մեկ «Սիրիուսը»: Այս արեգակ-լամպը կարող է լուսավորել հարյուր հեկտար տարածություն: Իսկ դա նշանակում է, որ բավական է մի քանի այդպիսի լամպ, որպեսզի ամբողջ քաղաքի փողոցները ողողվեն արևային մեղմ լույսով: «Սիրիուսը» մեծ ապագա ունի:*

## ՏՆԵՐ... ՍԱՌՈՒՅՑԻՑ

*1790 թվականին Աննա Իոաննովնա թագուհու ցանկությամբ սառույցից տուն կառուցվեց: Սառույցից էին այդու ծառերը, ամբողջ կահույքը, նույնիսկ՝ թնդանոթները: Բայց դա պարզապես թագուհու քմահաճույքն էր:*

*Այժմ սառույցը որպես շինանյութ օգտագործվում է մեր երկրի հյուսիսային մասում:*

*Շինարարական սառույցը կատարում է առաջին հայացքից անսովոր թվացող մի դեր. ջերմություն է պահում: Տների, պահեստների ու ժամանակավոր շինությունների պատերը պատրաստում են սառույցից և ներսի համար այլևս սարսափելի չէ ո՛չ սառնամանիքը, ո՛չ էլ բուքը:*

*Վերջերս սովետական ինժեներները ստեղծեցին «սառցաերկաթբետոն»: Երկաթաձողերի ու երկաթացանցերի վրա պատրաստած սառցե սալիկները իրենց ամրությամբ չեն զիջում բետոնին: Դրանցով Հյուսիսում կարելի է շենքերի հիմքերը գցել, կառուցել խճուղու և երկաթուղու կամուրջներ, փոքրիկ տներ կառուցել երկրաբանների ու բանվորների համար: Այդպիսի տները ներսից երեսապատվում են հատուկ շերտիկներով, որպեսզի պատերը չհալչեն:*

## ՀԱՐՅՈՒՐ ՏԱՌ

Գրեցեք այնպիսի հասարակ գոյականների անուններ, որտեղ «ա»-ից բացի, ուրիշ ոչ մի ձայնավոր տառ չլինի: Այդ բառերի ցուցակում «ա»-ն պետք է կրկնվի հարյուր անգամ:

Հաղթող կհամարվի նա, ով ավելի քիչ բառերով կստանա հարյուր «ա»: Դրա համար պետք է ընտրել այնպիսի բառեր, որտեղ «ա»-ն մի քանի անգամ է կրկնվում, օրինակ՝ անապատ:

**ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ԱՊԱԳԱՅԻ ՔԱՂԱՔԸ**

# ԻՆՉ ԲԱՆ Է ՄՈՒՐԸ



**Ծ**խնելույզներից դուրս եկող մուրը ոչ միայն քաղաքների մաքրության թշնամին է, այլև արդյունաբերության կարևոր հումքերից մեկը: Առանց մրի չէր լինի գրքի տպագրություն, չէր լինի պլաստմասսայի, ծայնապնակների, պատճենահան թղթի, հոսանքի քիմիական աղբյուրների, լաքի և այլ անհրաժեշտ առարկաների արտադրություն: Սակայն մուրը գլխավորապես սպառվում է ավտոդողերի և ռեզինատեխնիկական իրերի արդյունաբերության մեջ:

Ամբողջ աշխարհում (առանց Սովետական Միության) տարեկան արտադրվում է երեք միլիոն տոննա կաուչուկ: Մեկ տոննա կաուչուկ մշակելու համար ծախսվում է միջին հաշվով 400 կիլոգրամ մուր: Ուրեմն միայն այդ նպատակի համար տարեկան պետք է մեկ միլիոն 200 հազար տոննա մուր: Ամբողջ աշխարհում այժմ տարեկան ստացվում է 20 միլիոն խորանարդ մետր մուր: Ժամանակակից տեխնիկայի զարգացման հետ միասին ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում մուրը: Դրա համար էլ 1965 թվականին 25 անգամ ավելի շատ մուր է արտադրվելու մեր երկրում, քան 1959 թվականին:

## ԴԱՐԵՐԻ ԽՈՐՔԻՑ

Մարդիկ մրից օգտվել են դեռևս հին դարերում: Չինաստանում ու Ճապոնիայում մրից ստացել են կանաչան բարձրորակ ներկեր: Պատմության մեջ հայտնի է չինական տուշը: Գիտնականների կարծիքով Չինաստանից տուշը անցել է Հունաստան ու Հռոմ: Դարեր հետո մուրը չինական հիերոգլիֆներ ու գեղեցիկ նկարներ դարձած՝ Եվրոպայի առաջ բաց է արել Հին Արևելքի կուլտուրան: Իսկ Եվրոպայից,



տպագրական ներկ դառած, վերադարձել է Արևելք և գրքերի միջոցով եվրոպական կուլտուրան տարածել է ամբողջ աշխարհում:

## ՄՐԻ ՌԵԺԸ

Վերցնենք երկու կտոր ռեզին, որոնցից մեկը պատրաստված է առանց մրի խառնուրդի: Պարզվում է, որ մրով պատրաստված ռեզինը 16 անգամ ավելի դիմացկուն է, քան մյուսը: Մրի օգտագործման շնորհիվ ավտոդողերի դիմացկունությունը մեծանում է 5—6 անգամ: Երբ



առաջին անգամ պարզվեց մրի այդ հատկությունը (1910 թ.), մուրն հիմնականում սկսեցին օգտագործել ոչ թե տպագրության, այլ ռեզինի արդյունաբերության մեջ: Մուրն այժմ պետք է նաև էլեկտրաարդյունաբերությանը, մետալուրգներին, քիմիկոսներին, ճանապարհաշինարարներին:

## ՄԻԿՐՈՍԿՈՊԻ ՏԱԿ

Մուրն ստացվում է ածխածնային նյութերի ոչ լրիվ այրումից: Դրա համար կան հատուկ գործարաններ: Մուրն իրենից ներկայացնում է մանր, սև փոշի, որը գլխավորապես բաղկացած է ածխածնի մանրագույն մասնիկներից: Բայց մուրը միայն մաքուր ածխածին չէ. իր մեջ պարունակում է նաև մինչև մեկ տոկոս ջրածին, 4,5 տոկոս թթթ-

**վածին և այլն: Պարզ է, որ այդ բաղադրության տարբերությունից փոխվում է մրի որակը և տարբեր կերպով ներգործում ռեզինի վրա: Մուր կա, որ բարձրացնում է ամրությունը, մուր էլ կա, որ ռեզինը դարձնում է ավելի ճզողական կամ լավ հաղորդիչ:**



«Պոբեդա» ավտոմեքենայի մեկ անվադողը իր մեջ պարունակում է մոտ 4 կիլոգրամ մուր:

Մրի առաջին գործարանը Ռուսաստանում կառուցվել է 1871 թ. Պետերբուրգի մոտ (այժմ Լենինգրադ):

Որպեսզի ճանապարհներն ավելի բարձրորակ լինեն, ասֆալտին խառնում են մուր:



Հյուսիս-Արևմտյան Չինաստանում մեծ տարածություն են գրավում չորային հողերը, իսկ շուրջը վեր են խոյանում ձյան ու սառույցի բազմաթիվ սարեր, որոնք կարող էին մեծ քանակությամբ ջուր տալ պապակ հողերին: Բայց ինչպե՞ս հալեցնել այդ սառույցները: Երեք տարի առաջ չինացիները ինքնաթիռներից սկսեցին մրախառն մոխիր ցանել սառցապատ սարերին, որպեսզի սևանա սպիտակ մակերևույթը և արևի ճառագայթներն ավելի ուժեղ ներգործեն ու հալեցնեն սառույցը:

# ՌԱԴԻՈԱՉՔ

*Սերպուխով քաղաքից ոչ այնքան հեռու, ոսկայական տարածության վրա, վեր են ձգվում երկաթյա երկշարք աշտարակներ: Դրանք անտեննաներ են: Այստեղ կառուցվում է նոր ռադիոտելեսկոպ. մի վիթխարի ռադիոաչք, որ նայելու է տիեզերքի անծայրածիր հեռուները:*

*Ռադիոտելեսկոպի հրապարակը, ինչքան մեծ լինի, լուսազգացությունն այնքան ավելի կլինի: Նոր տելեսկոպը կարող է հայտնաբերել հավիժ որսվող այն ռադիոճառագայթումները, որ գալիս են անչափ հեռավոր գալակտիկաներից, աստղային կույտերից: Ռադիոալիքները, ինչպես նաև լույսը, որոնք մեկ վայրկյանում 300 հազար կիլոմետր են անցնում, այդ գալակտիկաներից մեզ են հասնում դրեթե 10 միլիարդ տարվա ընթացքում: Այն ալիքները, որ այսօր մենք որսում ենք, առաջ են եկել այն ժամանակ, երբ Երկիրը դեռևս գոյություն չի ունեցել:*

*Նոր տելեսկոպը մեր գիտության համար շատ արժեքավոր գաղտնիքներ բաց կանի:*

# ՑԱՆՑԶԻԻ ԿՈԿՈՐԴԻԼՈՍՆԵՐԸ

*Կոկորդիլոսները դուրս են գալիս ոչ մեծ ձվից և ապրում են դարից ավելի: Փոքրիկ կոկորդիլոսը մեծանալով դառնում է երկուսից տասը մետր երկարություն ունեցող խոշոր կենդանի: Անցյալում կոկորդիլոսների վերաբերյալ հորինվել են շատ լեգենդներ. ասում են, որ իբր կոկորդիլոսները վիշապի և կրիայի խառնուրդ են եղել, որ նրանք շնչել են ականջներով, թռչել են ջրի վրայով՝ թողնելով իրենց հետևից գոլորշի և կրակ: Չինաստանի գետերում շատ են տարածված կոկորդիլոսները:*

*Ցանցզիի ջրերում թագավորում է կոկորդիլոսների մի տեսակ՝ ալիգատորները. սրանք համեմատաբար ավելի խոշոր են, ունեն մոտ ութսուն ատամ: Նրանց աչքերը դուրս ընկած են, ինչպես կտրված գդալի կոր մասը, իլիկաձև մարմինը ծածկված է թուխ կանաչավուն կրահով և աղոտ փայլ ունի: Նրանք լողում են արագ և անձայն՝ շարժելով հզոր պոչը և թաթերը, երկար ժամանակ մնում են ջրի տակ, սնվում ձկներով: Կոկորդիլոսները ամբողջ ձմեռը քնում են խոր գետնափոսերում մինչև ուշ գարուն՝ առանց սնունդ ընդունելու: Կոկորդիլոսի ստամոքսում կարելի է գտնել ավազ և գետաքարեր, որոնք շատ բարձր են գնահատվում և օգտագործվում են որպես շինանյութ:*

*Կոկորդիլոսի կաշվից պատրաստում են կանացի գոտիներ, պայուսակներ, սնդուկներ, որոնք ջրում չեն սուզվում, իսկ մսից՝ շատ համեղ և թանկ ուտելիքներ:*

*Ցանցզիի կրպակներում վաճառվում են կոկորդիլոսի ձվից պատրաստած բազմաթիվ և բազմագույն դիմակներ: Չինաստանում կոկորդիլոսից ստացված դեղը օգտագործում են ոսկրային հիվանդությունների, կարիճների ու պիծակների խայթոցների դեմ, ինչպես նաև երկարակեցության համար: Կոկորդիլոսները տարածված են նաև Ինդոսի, Գանգեսի, Ամազոնի, Միսսիսիպիի ջրերում, Բիրմայի գետերում և Ավստրալիայի ծովափերում:*

# ՋԵԼՍՈՄԻՆՈՆ ԽԱԲԵԲԱՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ



## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

Դուք երևի հիշում եք, որ Ջելսոմինոն քնեց նկուղում՝ ածուխի կույտի վրա: Ճիշտ որ ասենք, դա այնքան էլ հարմար անկողին չէր, բայց դե երիտասարդները հարմարությանն այնքան էլ չեն նայում, ու թեև ածուխի սուր կտորները ծակում էին նրա կողերը, այդ չէր խանգարում, որպեսզի Ջելսոմինոն պինդ քնի և դեռ երազ էլ տեսնի:

Քնի մեջ նա սկսեց երգել:

Շատերը քնած ժամանակ խոսելու սովորություն ունեն, իսկ Ջելսոմինոն երգում էր: Երբ արթնանում էր, ոչինչ չէր հիշում: Գուցե նրա ձայնը այդ խաղը խաղում էր տղայի գլխին այն բանի համար, որ Ջելսոմինոն ամբողջ ցերեկը ստիպում էր նրան լռել: Դրանով ձայնը պարզապես վրեժ էր լուծում իր տիրոջից այն բոլոր դեպքերի համար, երբ վերջինս արգելում էր նրան դուրս պրծնել կոկորդից:

Ջելսոմինոն քնի մեջ կիսաձայն էր երգում, բայց դա էլ բավական էր, որպեսզի քաղաքի կեսին ոտքի հաներ:

Բնակիչները պատուհանից նայում էին դուրս ու կայքանում.

— Որտե՞ղ է կորել գիշերապահը: Սա ուղղակի անտանելի է, մի՞թե մեկը չկա, որ այդ հարբեցողին ստիպի լռել:

Գիշերապահները վազվզում էին այս ու այն կողմ, բայց դատարկ փողոցներում ոչ ոք չկար:

Արթնացավ նաև քաղաքային թատրոնի դիրեկտորը, որն ապրում էր քաղաքի հակառակ ծայրում: Ջելսոմինոյի նկուղից մի տասը կիլոմետր հեռու:

— Ի՜նչ սքանչելի ձայն է,—բացականչեց նա:—Ա՜յ, սա իսկական տենոր է: Բայց այդ ո՞վ է այսպես երգում: Ախ, եթե ես կարողանայի նրան ձեռք գցել, իմ թատրոնը հանդիսականների առատությունից փուլ կգար: Այդ մարդը կարող էր ինձ փրկել:

Եվ իրոք, դուք պետք է իմանաք, որ այդ քաղաքի թատրոնը ճգնաժամ էր ապրում, ավելի ճիշտ՝ կործանման եզրին էր կանգնած: Խաբեբաների աշխարհում երգիչները քիչ էին, եղածներն էլ իրենց պարտքն էին համարում կեղծ երգել, և ահա թե ինչու: Երբ նրանք լավ էին երգում, հանդիսականներն սկսում էին աղաղակել. «Հերիք է հաչես, շո՜ւն», իսկ երբ վատ էին երգում, նրանք գոռում էին. «Կեցցե՜ս, բրա՜վո, բի՜ս»: Երգիչներն, հասկանալի է, գերադասում էին, որ «կեցցես» կանչեն, և վատ էին երգում:

Թատրոնի դիրեկտորը շտապ հագավ և դուրս գալով փողոց, գնաց դեպի քաղաքի կենտրոնը, որտեղից որ ձայնը գալիս էր նրա կարծիքով: Ես ձեզ չեմ պատմի, թե քանի անգամ նրան թվաց, թե արդեն հետքը գտել է:

— Անպայման այս տանն է,— ամեն անգամ ասում էր նա,— կասկած չկա, ձայնը լսվում է վերի հարկի պատուհանից:

Երկու ժամ հետո, հոգնությունից նա կիսամեռ էր եղել և արդեն ուզում էր հրաժարվել հետագա որոնումներից, երբ հանկարծ հասավ այն նկուղին, ուր քնած էր Ջելսոմինոն: Պատկերացնո՞ւմ եք, թե որքան զարմացավ նա, երբ լուցիչի թույլ լույսի տակ տեսավ, որ արտասովոր ձայնը պատկանում է ածխի կույտի վրա քնած մի պատանու:

— Եթե նա քնի մեջ այդքա՛ն լավ է երգում, կարելի է պատկերացնել, թե ինչքան լավ կերգի արթուն ժամանակ,— ձեռքերը շփելով ասաց թատրոնի դիրեկտորը:— Այս պատանին ուղղակի գանձ է և, ինչպես երևում է, ինքը չգիտի այդ մասին: Ես գտա այդ գանձը, և նա կօգնի ինձ, որ հարստանամ:

Նա արթնացրեց Ջելսոմինոյին և ներկայացավ.

— Ես մաեստրո Դոմիսոլն եմ և տասը կիլոմետր անցել եմ ոտքով, որպեսզի գտնեմ քեզ: Դու անպայման հենց վաղը երեկոյան կերգես իմ թատրոնում: Իսկ հիմա վեր կաց, գնանք մեր տուն և փորձ անենք:

Ջելսոմինոն փորձեց հրաժարվել: Նա անընդհատ ասում էր, թե քունը տանում է, բայց Դոմիսոլը խոստացավ նրան տրամադրել երկուտեղանոց շատ հարմար մի անկողին: Հետո Ջելսոմինոն ասաց, որ երբեք երաժշտությամբ չի զբաղվել, իսկ մաեստրոն սկսեց երդվել, որ նման ձայն ունեցողի համար բոլորովին էլ պետք չէ նոտաներ իմանալը:

Իսկ Ջելսոմինոյի ձայնը, պարզ է, շտապեց օգտվել հարմար առիթից. «Համարձակ եղիր,— հրահրում էր նա իր տիրոջը:— Մի՞թե դու չէիր, որ ուզում էիր երգիչ դառնալ: Համաձայնվիր, թերևս դա լինի քո երջանկության սկիզբը»:

Մաեստրո Դոմիսոլը վերջ տվեց այդ հակաճառություններին և, բռնելով Ջելսոմինոյի թևից, կառով քարշ

---

Սկիզբը՝ նախորդ համարում:

տվեց նրան իր հետևից: Տուն գալով նա նստեց դաշնամուրի առաջ և ակորդ վերցնելով Ջելսոմինոյին հրամայեց.

— Երգի՛ր:

— Գուցե պատուհանները բացե՞նք,— քաշվելով ասաց Ջելսոմինոն:

— Ո՛չ, ո՛չ, ես չեմ ուզում հարևաններին անհանգստացնել:

— Իսկ ի՞նչ երգեմ:

— Ինչ ուզում ես երգիր: Թեկուզ այն երգերից մեկը, որ երգում են ձեր գյուղում:

Եվ Ջելսոմինոն սկսեց երգել իրենց գյուղի երգերից մեկը: Նա աշխատում էր, որքան կարելի է, ցածր երգել և միաժամանակ աչքը չէր կտրում պատուհանների ապակիներից, որոնք ուժեղ ցնցվում էին ու թվում էր, թե որտեղ որ է հապար կտոր կդառնան:

Սակայն ապակիները չէին ջարդվում. դրա փոխարեն երկրորդ տունը երգելիս փշուր-փշուր եղավ ջահը և սենյակը թաղվեց խավարի մեջ:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Հիանալի՜ է,— ասաց մաեստրո Դոմիսոլը մոմը վառելով:— Սքանչելի՜ է, ցնցող: Արդեն երեսուն տարի է, որ այս սենյակում տենորներ են երգում և նրանցից ոչ մեկին չի հաջողվել դեռևս նույնիսկ սուրճի մի գավաթ ջարդել:

Երրորդ տան վերջում, ինչպես որ ենթադրում էր Ջելսոմինոն, պատուհանի ապակիները փշրվելով ցած թափվեցին: Մաեստրո Դոմիսոլը վեր թռավ տեղից նետվելով դեպի Ջելսոմինոն, պինդ գրկեց նրան.

— Տղա՛ս,— հրճվանքից լալով գոռում էր նա:— Ահա և ապացույց, որ ես չեմ սխալվել: Դու կլինես բոլոր ժամանակների ամենամեծ երգիչը: Քո երկրպագուները կհանեն ավտոմեքենայիդ անիվները և քեզ ձեռքերի վրա կտանեն:

— Բայց ես ավտոմեքենա չունեմ,— նկատեց Ջելսոմինոն:

— Դու տասնյակ ավտոմեքենաներ կունենաս: Յուրաքանչյուր օր դու նոր ավտոմեքենա կնստես: Փառք տուր երկնքին, որ քեզ հանդիպեց մաեստրո Դոմիսոլը: Իսկ հիմա, էլի՜ մի երգ երգիր:

Ջելսոմինոն մի փոքր հուզվեց: Դե, իհարկե, կյանքում առաջին անգամ էին նրան երգելու համար գովում: Նա փառասեր չէր, բայց գովասանքը բոլորին էլ դուր է գալիս: Նա հաճույքով մի երգ էլ երգեց և այս անգամ արդեն չէր աշխատում զսպել իր ձայնը: Նա ընդամենը մեկ թե երկու բարձր նոտա վերցրեց, բայց այդ էլ բավական էր, որպեսզի իսկական խառնաշփոթություն ու իրարանցում սկսվեր:

Հարևան տներում պատուհաններն իրար հետևից ջարդվում էին, մարդիկ սարսափած գլուխները դուրս էին հանում պատուհաններից ու բղավում.

— Երկրաշա՜րժ... օգնեցե՛ք, օգնեցե՛ք... Ով կարող է, թող գլուխն ազատի՜...

Ականջ ծակող սուլոցով սլացան հրշեջ մեքենաները: Փողոցում հայտնվեցին մարդկանց խուռներամ խմբեր, որոնք նետվում էին դեպի քաղաքից դուրս՝ քարշ տալով տնային իրերով լի սայլակները և քնած երեխաներին գրկած:

Մաեստրո Դոմիսոլը ուրախությունից կորցրել էր իրեն:

— Շշմեցուցիչ է, չտեսնվա՛ծ, չլսվա՛ծ:— Նա Ջելսոմինոյին գրկած անընդհատ համբուրում էր նրան: Այնուհետև նա տղայի պարանոցին տաք վզնոց գցեց, որ հանկարծ ձայնը չմրսեցնի. իսկ հետո հրավիրեց նրան ճաշասենյակ և մի այնպիսի ճաշով հյուրասիրեց, որը, երևի, մի տասը գործավուրկի կկշտացներ:

— Կե՛ր, որդյակ իմ, կե՛ր,— ասում էր նա:— Այս հավի միսը մոտիկ քաշիր քեզ: Հավի միսն օգնում է ավելի բարձր նոտաներ վերցնելուն: Իսկ ոչխարի այս ոտքը հատուկ թավշյա երանգ է տալիս ցածր նոտաներին: Կե՛ր: Այսօրվանից սկսած դու իմ հյուրն ես: Դու կապրես իմ ամենալավ սենյակում, որի պատերը ես կկարգադրեմ թաղիքով պատեն և դու, ինչքան որ ուզում ես, կարող ես վարժվել: Ո՛չ ոք քեզ չի լսի:

*Ջելսոմինոն, ճիշտն ասած, ուզում էր նետվել փողոց, որպեսզի վախեցած բնակիչներին հանգստացնի կամ թեկուզ կանգահարի հրշեջներին, որպեսզի իզուր տեղը այս ու այն կողմ չսլանային քաղաքում, բայց մաեստրո Դոմիսոլը համոզեց նրան.*

*— Խորհուրդ չեմ տալիս, որ այդպես վարվես, որդյակս: Չէ՞ որ դու ստիպված պիտի լինես վճարել բոլոր ջարդված ապակիների համար, իսկ առայժմ դու մի գրոշ անգամ չունես: Էլ չեմ ասում, որ կարող են քեզ բանտարկել: Իսկ եթե ընկնես բանտ, այն ժամանակ ձեռք պիտի քաշես երաժշտական կարիերայից:*

*— Իսկ եթե թատրոնում էլ իմ ձայնը աղետի պատճառ դառնա՞:*

*Դոմիսոլը ծիծաղեց.*

*— Թատրոններն էլ նրա համար են ստեղծված, որպեսզի երգիչներն այնտեղ երգեն: Թատրոնները ոչ միայն ձայների են դիմանում, այլև ռումբի պայթյունի: Դե հիմա գնա քնելու, իսկ ես կզբաղվեմ հայտագրերով ու կտամ, որ շուտ տպագրեն:*

(Շարունակելի)

(Շարունակելի)



# ՄՐՑՄԱՆ ԵՆՔ ՀՐԱՎԻՐՈՒՄ



**Այս անգամ «Ժամանց» բաժնի նյութերը տպագրված են ամսագրի տարբեր էջերում: Նրանք, ովքեր կգտնեն բոլոր խնդիրներն ու առաջարկները և ճիշտ կլուծեն, խմբագրության կողմից կարժանանան պարգևի:**

**Սպասում ենք ձեր պատասխաններին:**

## Ո՞Ր՞Ն Է ԱՎԵԼԻ ԵՐԿԱՐ

Ուշադիր նայելուց հետո որոշեք, թե որն է ավելի երկար. մեծ կիսա-



շրջանի երկարությո՞ւնը, թե՞ երեք փոքր կիսաշրջանները միասին վերցրած:

## ՀԱՄԲԵՐԱՏԱՐ՞ՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1—16 թվերը դասավորեք շըրջանակներում այնպես, որ ուղղահայաց և հորիզոնական դասավորված հինգ շրջանակների թվերը գումարը լինի 40: Պետք է 40 ստացվի նաև գծագրի կենտրոնական մասում քառակուսի դասավորված 8 շրջանակների թվերի գումարը: Թվերը ճիշտ դասավորելու դեպքում, մի ծայրում եռանկյունաձև դասավորված երեք շրջանակների թվերի գումարը պետք է հավասար լինի մյուս ծայրերում եռանկյունաձև դասավորված թվերի գումարին:




## ԻՆՉՊԵ՞Ս ԱՆՑՆԵ՞Ն ԳԵՏԸ



Երեք մարդ պետք է գետի մի ափից անցնեն մյուս ափը: Նրանք ունեն մի հին նավակ, որը դժբախտաբար, կարող է դիմանալ ընդամենը հարյուր կիլոգրամ ծանրության: Մարդկանցից մեկի քաշը 100 կգ է, իսկ մյուսներինը՝ 50-ական կգ: Ինչպե՞ս անցնեն գետը:

# ԵՐԿԱԹԵ ՏԻԳՐԱՆԸ





Խոշոր ու թուխ աչքերով, սևահեր մի տղա էր նա և ճամբարում ոչընչով աչքի չէր ընկնում: Գուցե մի փոքր քաշվում էր, որովհետև առաջին անգամ էր ճամբարում լինում, կամ գուցե այդ նրանից էր, որ հասակով էլ շատերից փոքր էր: Տասներկու տարեկան Տիգրանը բոլորին կարմացրեց միայն այն ժամանակ, երբ շատերի հետ նա էլ սովորեց շախմատ խաղալ:

Ճամբարում խաղեր շատ կային, բայց նա հափշտակված նայում էր շախմատի տախտակին, հետևում ծիու տարօրինակ թռիչքներին և փղի շեղակի սլացքին, համեստ ու դանդաղաշարժ զինվորի հաստատուն ընթացքին ու նրա կախարդական կերպարանափոխություններին: Դա արդեն մի աշխարհ էր՝ գաղտնիքներով ու անսպասելիություններով լի հեքիաթային աշխարհ և այդ աշխարհը գրավեց փոքրիկ Տիգրանին:

Շատերը չէին հավատում, թե նա առաջին անգամ է շախմատ խաղում, բայց այդտեղ էին նրանք, ովքեր մի քանի օր առաջ էին տղային քայլերը սովորեցրել: Ճամբարում տարածվեց պատանու համբավը: Հակառակ մյուսների, որոնք առանձնապես իրենց նեղություն չէին տալիս մտածելու համար, Տիգրանը երկար մտածում էր ամեն մի քայլի վրա: Նա յուրաքանչյուր քայլից առաջ բազմաթիվ հնարավորություններ էր տեսնում և աշխատում էր ընտրել դրանցից լավագույնը: Այդ էր պատճառը, որ նա շուտով սկսեց տանել նաև նրանց, ովքեր վաղուց արդեն ծանոթ էին շախմատին և մասնակցել էին կանոնավոր մրցումների:

Սակայն խաղը Տիգրանի կյանքում մեծ շքեղություն էր: Նա վաղ հասակում զրկվեց մորից և ընտանիքի հոգսը շատ շուտ սկսեց ծանրանալ նրա ուսերին: Նա պետք է օգներ բանվոր հորը՝ ընտանիքի ապրուստը հայթայթելու համար: Պատերազմի ծանր տարիներն էին, և այն ժամանակ, երբ նրա տարիքի երեխաները դասերից հետո բակում կանոնավոր խաղեր էին խաղում ու զվարճանում, փոքրիկ Տիգրանը շտապում էր կինոմեխանիկի խցիկը, ուր նա աշխատում էր որպես մեխանիկի օգնական:

Շուտով սահացավ նաև նրա հայրը և պատանու դրությունն ավելի ծանրացավ: Ընտանիքի հոգսն այդ օրվանից ամբողջովին ընկավ նրա ուսերին և Տիգրանն սկսեց ավելի շատ աշխատել: Սակայն դա չէր խանգարում, որ նա գերազանցիկ լինի դպրոցում և հաճախի Թբիլիսիի պիոներպալատի շախմատի խմբակի պարապմունքներին:

Խմբակի ղեկավարը հմուտ շախմատիստ Արչիլ Էբրալիձեն նկատեց Տիգրան Պետրոսյանի արտակարգ շնորհքը, զգաց, որ նա շատ հեռուն կգնա և սկսեց նրա հետ պարապել մի առանձին ուշադրությամբ ու սիրով: Եվ նրա ջանքերն իզուր չանցան: Շուտով փոքրիկ Տիգրանը մեծահասակների հետ մասնակցելով Թբիլիսիի առաջնությանը, գրավեց առաջին տեղը: Նույն 1945 թվականին նա դարձավ նաև Վրաստանի չեմպիոնը: Մի տարի հետո նա Հայաստանում ևս առաջին տեղը գրավեց ու այդ բոլորը սկիզբ դարձան այն մեծ ճանապարհի համար, որը մեր հայրենակցին հասցրեց միջազգային գրոսմեյստերի աստիճանի, հաղթանակ տվեց հեռավոր Կյուրասաո կղզում ու Բոտվիննիկի դեմ:

Եվ ահա Տիգրան Պետրոսյանը աշխարհի չեմպիոն է: Նրա մասին ասում են՝ «Երկաթե Տիգրան», «Վագր», «Նոր Կապաբլանկա» ու, թեև Պետրոսյանը նոր է նվաճել աշխարհի թագը, արդեն բոլորն ասում են, որ շատ դժվար կլինի նրանից այդ թագը հետ վերցնելը:

# ՀԱՐՑՐՈՒ՝ ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ



Հարգելի խմբագրություն, խնդրում եմ գրեք այն մասին, թե ով է հնարել ժամացույցը և երբ:

ՌՈՒԶԱՆՆԱ ԱԹԱՆՅԱՆ
(Երևանի 56-րդ դպրոցի 4-րդ դասարանի աշակերտուհի)

## ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐԻ ԱՆՑՅԱԼԻՑ



Սիրելի Ռուզաննա, դու ո՞ր ժամացույցի մասին ես հարցնում. չէ՞ որ մարդիկ շատ ժամացույցներ են ստեղծել։ Ամենահինը արևի ժամացույցն է, որն ունի 5—6 հազար տարվա պատմություն։ Թե ով է հնարել, այժմ հնարավոր չէ իմանալ։ Համենայն դեպս եգիպտացիները ժամանակը որոշում էին արևի ժամացույցով. նայած թե ձողիկի ստվերը որտեղ էր ընկնում։

Հնում մարդիկ օգտվել են նաև ջրային ժամացույցից, որը շատ հասարակ կառուցվածք ունի։ Երկու աման հարմարեցնում էին այնպես, որ ջուրը մեկից հոսեր մյուսի մեջ։ Ժամանակը որոշվում էր նրանով, թե որքան ջուր է հոսել մեկ ամանից մյուսը։ Մարդիկ իրար այսպես էին ասում. «Երբ դու հյուր էիր գնացել, երեք անգամ ամանը լցվեց»։ Գուցե այդ ժամանակներում է ստեղծվել «Շատ ջուր հոսեց» արտահայտությունը։

Բայց մարդկանց պետք էր ավելի ստույգ որոշել ժամանակը, չափել ավելի կարճ ժամանակամիջոց։ Դա պետք էր գիտնականներին, որոնք դիտում և նկարագրում էին բնության երևույթները կամ զանազան փորձեր էին անում լաբորատորիաներում։ Ժամանակը ստույգ պետք է իմանային նաև ապակի, հանքանյութեր ու դեղորայք պատրաստող վարպետները։



Դրա համար էլ ջրային ժամացույցին փոխարինեց ավազայինը։ Այս դեպքում ջրի փոխարեն մանր ավազն էր հոսում մի ամանից մյուսը։ Ավազային ժամացույցները լինում էին տարբեր չափսերի. մեծերում ավազը դատարկվում էր կես ժամվա ընթացքում, 15 րոպեում, իսկ փոքրերում՝ մեկ կամ կես րոպեի ընթացքում։

Հետագայում երևան եկան թվացույցն ու սլաքները։ Ջրի հոսանքը պտտում էր թիավոր անիվը, իսկ սա էլ շարժում՝ էր սլաքները։



13-րդ դարում ջրին փոխարինեց կշռաքարը, որը կախում էին անիվի առանցքից։ Կշռաքարին կապած պարանը կամ շղթան փաթաթում էին անիվի գլանին, և ծանրության ազդեցության տակ գլանը սկսում էր պտտվել, աշխատեցնելով ժամացույցի մեխանիզմը։ Այս տիպի ժամացույցները ունեին բարդ կառուցվածք և շատ մեծ տեղ էին զբաղեցնում։ Այդ պատճառով էլ սովորաբար դրանք պատրաստում էին աշտարակների կամ զանգակատների վրա։

Մոտավորապես 1500 թվականին Նյուրնբերգում ստեղծեցին առաջին փոքր ժամացույցը, որը կոչվեց Նյուրնբերգյան ձու։ Դա որոշ չափով նման էր մեր գրպանի ժամացույցներին։



Եվ, վերջապես, 1642 թվականին մեծ գիտնական Գալիլեո Գալիլեյի որդին հնարեց ճոճանակով ժամացույցը, որի կառուցման սկզբունքը զբաղեցրել էր նաև Գալիլեյին։

1658 թվականին, Գալիլեյից անկախ, հոլանդական ֆիզիկոս և աստղագետ Գյուգենսը ստեղծեց նույնպիսի ժամացույց։

Ժամանակակից ժամացույցի ճոճանակը գործի է դրվում ոչ թե ծանրության ուժով, այլ՝ զսպանակով։

**ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ Է**

# ՎՏԱՆԳԱՎՈՐ ԲԱՂՆԻՔ



Սիրելի խմբագրություն, մի անգամ ես սենյակում նստած գիրք էի կարդում: Մեկ էլ լուսամուտից դուրս նայեցի և ահա թե ինչ տեսա: Երեք ճնճղուկ լողանում էին այն պտանի մեջ, որտեղ հավերի համար ջուր էինք լցնում: Այդ ժամանակ ձմեռ էր, սառնամանիք, ջրի երեսը սկսել էր ծածկվել սառցի բարակ շերտով: Չնայած դրան, ճնճղուկները լողանում էին: Մի՞թե նրանք չէին մրսում, ինչո՞ւ էին լողանում այդ ցրտին: Խնդրում եմ պատասխանեք:

ՀԱՍՄԻԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*(Լենինականի Նեկրասովի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի)*

*Դու հարցնում ես, թե ճնճղուկներն ինչու են լողանում սառնամանիքին: Նրանք լողանում են ճիշտ այն պատճառով, ինչ որ ամռանը. որպեսզի ազատվեն իրենց վրայի պարազիտներից: Եթե այդ պարազիտները շատանան, թռչունները կարող են սատկել: Փրկության միայն մեկ ճանապարհ կա. լողանալ:*

*Բայց ճնճղուկները չեն հասկանում, որ սառնամանիքին լողանալն ավելի վտանգավոր է: Մի կրակից ազատվում, մյուսն են ընկնում: Եթե դու ուշադրությամբ հետևեիր, ապա կտեսնեիր, որ այդ ճնճղուկները լողանալուց հետո երկար չեն ապրել, սատկել են:*



# ԿՇԵՌՔ

Ե՞րբ և ո՞վ է ստեղծել առաջին կշեռքը:

ՍԵԴԱ ՍԱՐԴԱՐՅԱՆ

*(Ղափանի № 2 միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի)*

*Առաջին նկարում պատկերված կշեռքը գտնվել է եգիպտական հնագույն տաճարներից մեկի պեղումների ժամանակ: Ոչ թե կշեռքն է գտնվել, այլ նկարը, որ պատկերված է եղել տաճարի պատին:*

*Սիրելի Սեդա, ինչպես տեսնում ես, այդ կշեռքը շատ է նման մեր այսօրվա կշեռքներին: Նկարն արված է մոտ հինգ հազար տարի առաջ, ուրեմն կշեռքը ավելի հին պատմություն ունի: Այդ պատճառով էլ մեզ չի հասել հեղինակի անունը:*

*Երկրորդ նկարում պատկերված կշեռքը ստեղծված է 1818 թվականին: Հեղինակի անունը դարձյալ անհայտ է:*

*Այժմ գոյություն ունեն բազմապիսի կշեռքներ, որոնք և՛ շատ կատարելագործված են, և՛ շատ զգայուն: Գիտական մի շարք աշխատանքների համար, որտեղ պահանջվում է մեծագույն ճշգրտություն, օգտագործվում են կշեռքներ, որոնք ցույց են տալիս գրամի միլիոներորդական մասը: Դրանք գտնվում են հատուկ շենքերում, միևնույն ջերմաստիճանի տակ և ծածկված են ապակե անոթով, որտեղ օդ չկա: Այդպիսի կշեռքով կարելի է կշռել նույնիսկ փոշու ամենափոքր հատիկը: Բայց կան նաև այնպիսի կշեռքներ, որոնք որոշում են երկուհարյուրտոննանոց շոգեքարշերի քաշը:*

*Բոլոր երկրներում կշեռքները գտնվում են պետության հսկողության տակ և շուտ-շուտ ստուգման են ենթարկվում: Սովետական Միությունում այդ պարտականությունը դրված է չափի ու կշռքի պետական պալատի վրա: Այդ պալատում է պահպանվում ճշտագույն կիլոգրամի նմուշը (էտալոն):*





## ՊՐՈՖԵՍՈՐ ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ

ՅՈՒՐԻ ՄԱՐՅԱՆ



այ գյուղացին դուրս է եկել իր տանից, նայել է աջ ու ձախ և հառաչել է դառնորեն.— Ա՜խ, լեռներ են չորս բոլորը, ապառաժներ, քար ու քարափ, վարելու համար հողը քիչ է բոլորովին... Բայց ինչ կարող ես անել, ապրել է պետք: Գտել է գյուղացին հողի մի պատառ և ըսկըսել է վարել: Վարում է, բայց գութանի խոփը հաճախ դեմ է առնում ինչ-որ կարծր բանի: Այստեղ անգամ քարերը խանգարում են: Գլաժայռերը թաքնվել են հողի տակ, ծանրացնում են մաճկալի աշխատանքը: Դժբախտություն է, ինչքա՜ն քարեր կան հայրենի հողում:

Բայց քարերը միայն խոչընդոտներ չէին: Չէ՞ որ մարդը պետք է իր տունն ունենար: Ուրիշ տեղերում ծառեր են կտրում, տախտակ քաշում և տուն շինում նըրանցից: Կամ կավ են շաղախում, լցնում կաղապարների մեջ, աղյուս թրծում: Այստեղ ամեն ինչ հասարակ է, վերցրու ցանկացածդ քարը, տաշիր ու պատ շարիր:

Իհարկե, բոլոր քարերը չեն, որ հարմար են շինարարության համար: Մեկը շատ պինդ է, դժվար է տաշել: Մյուսը չափից դուրս փխրուն է, փշրվում է չափից դուրս արագ: Երրորդից ծմռանը տանը ցուրտ է լինում: Տարբեր քարեր են փորձել և ընտրել են տուֆը, որից Հայաստանում շատ կա՝ ամբողջ սարեր: Մեծ են տուֆի առավելությունները: Նախ՝ հեշտ է մշակվում: Նրա գեղեցիկ գույները թույլ են տալիս չերեսապատել շենքերը: Տուֆը չի թողնում, որ տուն մտնեն ցուրտն ու տոթը, իսկ քամին, խոնավությունը, ջերմաստիճանի փոփոխությունները չեն քայքայում նրան:

Դրա համար էլ Հայաստանում համարյա բոլոր շենքերը կառուցել և կառուցում են տուֆից: Շենքեր կան հիմա, որոնք կանգնած են մի քանի հարյուր և անգամ հազար տարուց ավելի: Շատ հնուց են Հայաստանում սովորել տները կառուցել տուֆից: Եվ ոչ միայն կառուցել: Քարտաշները տուֆից քանդակել են ամեն տեսակ առարկաներ ու կենդանիներ, ազգային զարդանկարներ ու նրանցով զարդարել շենքերը: Հայ շինարարներն ու քարտաշներն աշխատել են այնքան հմտորեն, որ նրանց հրավիրել են պալատներ ու ամրոցներ կառուցելու աշխարհի տարբեր երկրներում:

Շինարարության մեջ հաճախ օգտագործվել է հայկական մարմարը, որը շատ գեղեցիկ է, բայց ձեռք բերելն ու մշակելը շատ մեծ դժվարություն է ներկայացնում:

Սովետական իշխանություն հաստատվելուց հետո, քարերով սկսեցին զբաղվել քիմիկոսները:

Սկսեցին կրաքարերից: Դրանք շատ են Հայաստանում: Շինարարներն ու քարտաշները դրանց համարյա ձեռք չեն տալիս: Ինչի՞ համար ձեռք տան, երբ կա հրաշալի տուֆը: Բայց ահա քիմիկոսները կարողացան կրաքարը դարձնել գերազանց որակի ցեմենտ: Վեդու շրջանում, կրաքարի հարուստ հանքերի մոտ կառուցեցին ցեմենտի հզոր գործարան: Եվ Հայաստանի ցեմենտը

# ՔԱՐԵՐԸ

գնաց դեպի արագ վարգացող երիտասարդ հանրապետությունների կառույցները:

Բայց քիմիկոսները դրանով չբավարարվեցին, չհանգըստացան: Կրաքարը նրանք դարձրին կարբիդ՝ կալցիումի փխրուն վանգված, կարբիդ կալցիումը՝ ացետիլենի գազ, ացետիլենը՝ քլորոպրենի հեղուկ, քլորոպրենը՝ կաուչուկ նաիրիտ, իսկ նաիրիտից սկսեցին շինել ավտոդողեր և ռետինե տարբեր գործվածքներ: Հիրավի կախարդական փոխարկումների գիտություն: Համեստ կրաքարը հանկարծ փոխարկվեց ցեմենտի ու ավտոդողի, իսկ վերջին ժամանակներս դրանից սկսել են ստանալ անգամ պլաստմասսաներ, արհեստական թելեր, թանկագին քարեր:

Հիմա խոսենք նեֆելինյան սիենիտի մասին: Սա էլ Հայաստանի քարերից մեկն է, որից հսկայական պաշարներ կան Հրազդանի շրջանում: Պաշարը հսկայական է, սակայն մինչև վերջին ժամանակներս նեֆելինյան սիենիտներին հավվադեպ են ձեռք տվել:

Գիտնականներն իմացել են, որ նեֆելինյան սիենիտի մեջ կա հումք, որից կարելի է ստանալ ալյումին, բայց ոչ ոք դրանով չի զբաղվել, որովհետև այդ հումքն անջատելը դժվար էր:

Գիտնականներն սկսեցին աշխատել: Եվ աշխատանքը շատ դժվար էր: Եղան անհաջողություններ, սխալներ: Բայց կոլեկտիվը աշխատեց համառորեն և...

Հաղթեց: Հաջողվեց հասնել այն բանին, որ նեֆելինյան սիենիտը կօգտագործվի ամբողջովին, ոչինչ դեն չի նետվի: Քարը դարձավ ալյումինի հանք, ցեմենտ և տարբեր տեսակի քիմիական նյութեր, որոնք շատ պետք են մեր արդյունաբերությանը, գյուղատնտեսությանը, բժշկությանը: Ի միջի այլոց, կա և միանգամայն նոր քիմիական նյութ, որը կոչվում է «Երևանիտ», քանի որ այն առաջինը գտնվել է Երևանում: Դա այնպիսի մի նյութ է, որից կարելի է ստանալ բարձր տեսակի բյուրեղապակի, ապակյա տարբեր տեսակի ապրանքներ, թելեր, որոնք բնական մետաքսից էլ նուրբ են ու գեղեցիկ:

Եվ եթե ընթերցողը լինի Հրազդանի շրջանում, նա կտեսնի, որ Հրազդան քաղաքի կողքին կառուցվում է ևս մի քաղաք: Բայց դա քաղաք չէ, այլ լեռնա-քիմիական վիթխարի կոմբինատ՝ բանվորական բնակելի թաղամասերով: Այստեղ նեֆելինյան սիենիտը փոխարկվելու է շատ կարևոր և անհրաժեշտ նյութերի:

Այժմ պեմզայի մասին: Մարդիկ վաղուց պեմզան օգտագործել են շինարարության համար: Բայց վերջին ժամանակներս պեմզան սկսել է օգնել կաշի, ապակյա, հախճապակյա և ռետինե ապրանքներ պատրաստելուն:

Ուրիշ մի օրինակ: Մենք արդեն ասացինք, որ արհեստական թել հաջողվել է ստանալ կրաքարի և նեֆելինյան սիենիտի մի ամբողջ շարք հրաշալի փոխարկումների ճանապարհով: Սակայն դրանով չի վերջանում: Ամենաբարակ, սարդոստայնանըման, գունավոր թելեր են ընկըսել ստանալ կվարցիտներից, պեմզայի ավազից, օբսիդիանից, տուֆի մի քանի տեսակներից: Այդ թելերն այնքան ամուր են, որ նրանցից ստացված գործվածքները քիմիկոսները անվանում են ապագայի գործվածքներ:



* * *

Ի՞նչ են քարերը: Ինչի՞ց է, որ մի տեղ դրանք շատ են, իսկ մյուս տեղերում բոլորովին չկան:

Մարդիկ վաղուց արդեն պատասխանել են այդ հարցերին: Մագմա հրեղեն հեղուկը, որը գտնվում է երկրագնդի ներսում, երբեմն ճեղքում է երկրագնդի կեղևը, առաջացնում հրաբուխներ, որոնց խառնարաններից հոսելով իբրև լավա, սառչում է երկրի մակերեսին: Սառած լավան դա հենց քարն է: Այնտեղ, ուր եղել են հրաբուխի ժայթքումներ, քարերը շատ են, ուր հրաբուխներ չեն եղել, քարեր չկան: Լավաների բաղադրությունը տարբեր է, դըրանից էլ քարերը տարբեր են:



Այդ բոլորը վաղուց հայտնի էր: Բայց ահա վերջին ժամանակներս գիտնականները մտածեցին.

— Իսկ ի՞նչ տեղի կունենա, եթե սառած լավան նորից ընկնի խառնարանի մեջ. կշարունակվի՞ հրաբխի ազդեցությունը բարձր ջերմաստիճանով: Որոշեցին փորձել, շարունակել բնության սկսած աշխատանքը:

Առաջին հերթին սկսեցին տուֆից: Չէ՞ որ այնտեղ, ուր արդյունահանվում է տուֆը և այնտեղ, ուր տներ են շինում, մեծ քանակությամբ տուֆի







*մանր բեկորներ են մնում, որոնք դեն են նետվում: Հավաքել են տուֆի այդ մանր բեկորները և լցրել արհեստական փոքրիկ հրաքխի՝ լաբորատորիայի վառարանի մեջ: Երբ ջերմաստիճանը հասել է 1200-ի, տուֆը հալվել է, նորից դարձել է լավա: Սառեցրել են այդ լավան: Եվ պարզվել է, որ այդ նոր սառած լավան տարբերվում է սովորական տուֆից: Այն մի քանի անգամ թեթև է տուֆից և նույնիսկ չի սուզվում ջրի մեջ: Բացի դրանից, ավելի լավ է դիմանում խոնավության, թթվուտների, ջերմաստիճանի փոփոխության ազդեցություններին, մշակման ժամանակ չի փշրվում, չի հաղորդում ձայնը և էլեկտրական հոսանքը:*

*Այդ նոր նյութը կոչել են «պենոտուֆ» և սկսել են գործադրել շինարարության մեջ:*

*Հետո սկսեցին բազալտից: Բազալտի մանր բեկորները նույնպես լցրին վառարանի մեջ: Բազալտը հալվեց, բայց դրա համար հարկավոր էր ավելի բարձրացնել ջերմաստիճանը, հասցնել մինչև 1500-ի: Փորձեցին այդ հեղուկը կաղապարի մեջ լցնել: Երբ հեղուկը սառեց, նորից դարձավ նույն բազալտը, բայց արդեն անհրաժեշտ ձև ստացած: Հրաշալի է: Ուրեմն կարելի է բազալտից, ինչպես չուգունից, ձուլել մեքենաների տարբեր դետալներ, որոնք ավելի ամուր և էժան են, քան չուգունե դետալները: Դրանց մշակումն է՛լ ավելի հեշտ է և ձեռնտու:*

*Հետո հերթը հասավ օբսիդիանին: Դա էլ հրաբխային ժայթքումների արդյունք է: Արագորեն սառչող լավան դարձավ ամուր ապակի, որը Հայաստանում կոչվում է «սատանի եղունգ»: Եթե դու, սիրելի ընթերցող, գնաս մեր պետական թանգարանը, այնտեղ կտեսնես ցուցանմուշներ, որոնք վկայում են այն մասին, թե ինչպես մեր հեռավոր նախահայրերը, որ դեռ ապրում էին քարանձավներում և չգիտեին բրոնզի, պղնձի, երկաթի մասին, «սատանի եղունգից» պարզունակ զենքեր էին պատրաստում, որոնցով որս էին անում և արմտիք ու պտուղներ հայթայթում: Հետո մարդը սովորեց «սատանի եղունգից» նիզակների ու նետերի ծայրակալներ պատրաստել: Մետաղի հայտնագործումից հետո մարդը մոռացել էր «սատանի եղունգը»:*

*Այժմ նորից հիշել են «սատանի եղունգը», որից ընկղբում հաջողվեց ապակեթել ստանալ: Հետո որոշեցին դրա հետ վարվել այնպես, ինչպես վարվեցին տուֆի և բազալտի հետ: Որոշեցին դրա համար ստեղծել արհեստական հրաբուխ: Պարզվեց, որ «սատանի եղունգը» բարձր ջերմաստիճանի տակ մինչև տասնհինգ անգամ մեծանում, մի քանի անգամ թեթևանում է և սառչելով այդպես էլ մնում:*

*Հարկավո՞ր է արդյոք դա մարդկանց: Շատ է հարկավոր: Չէ՞ որ այդ միջոցով կարելի է ստանալ գերթեթև քաշի խիճ ու ավազ, հետևաբար և գերթեթև քաշի բետոն: Բետոնի ամրությունը չի նվազում, միայն պակասում է նրա կշիռը: Հենց այդ էլ պետք է մարդկանց:*

*Այսպես շարունակելով բնության աշխատանքը, գիտնականներն ստանում են նորանոր անհրաժեշտ նյութեր:*

## ԱՌԱՆՑ ՀՈՂԻ

Սովետական Միությունում, ԱՄՆ-ում և եվրոպական մի շարք երկրներում շատ տնտեսություններ այժմ ծաղիկներն ու բանջարեղենը աճեցնում են... առանց հողի:

Հատուկ ցանցերի վրա աճող բույսերը իրենց սնունդը վերցնում են անոթներում եղած լուծույթից, արմատների օգնությամբ: Կա նաև ուրիշ եղանակ. բույսերը աճում են խճի կամ ավազի մեջ, որտեղ պարբերաբար լցվում է սննդարար լուծույթ: Այս եղանակով Հայկական ՍՍՌ ագրոքիմիայի լաբորատորիայում հաջողությամբ ստանում են պոմիդորի, վարունգի, գազարի մի քանի անգամ ավելի շատ բերք, քան դաշտային պայմաններում:

## ԾԱՌ—ԱՆՏԱՌ

Կալկաթա քաղաքի բուսաբանական այգին աշխարհում ամենախոշոր և հնագույն այգիներից է: Այստեղ ամենաուշագրավ բույսը բանյանի հսկայական ծառն է, որը բռնում է ավելի քան մեկ հեկտար տարածություն: Հեռվից այս ծառը հիշեցնում է անտառի: Երբ կանգնում ես նրա սաղարթի տակ, թվում է, թե գտնվում ես ստվերախիտ անտառում: Հետաքրքիրն այն է, որ բանյանի ցողուններից առաջանում են տասնյակ, հարյուրավոր և նույնիսկ հազարավոր ցողուններ:

Բանյանը չունի իր կենտրոնական բունը. այն ոչնչացել է պարազիտ սնկերի վարակից: Առողջ, ամուր լրացուցիչ բները կազմում են մոտ 900 հատ: Ծառ-անտառը 200 տարեկան է:

## ԸՆԿՈՒՅԶ—ՀՍԿԱՆԵՐ

Աշխարհի ամենախոշոր ընկույզները, որոնցից ամեն մեկը կշռում է մինչև 30 կիլոգրամ, աճում են Հնդկական օվկիանոսի Սեյշելյան կղզիներում: Այդ պտուղները արմավի տարատեսակներից են, որոնք ուրիշ ոչ մի տեղ չեն աճում:

Մինչև 18-րդ դարը Ասիայի և Աֆրիկայի ծովամերձ շրջանների բնակիչները չիմանալով, թե ալիքները որտեղից են բերում այդ հսկայական պտուղները, դրանք համարում էին օվկիանոսի պարգև, բնության հրաշք:

## ՆՅՈՒՏՈՆԻ ԿԱՏՈՒՆԵՐԸ

Նյուտոնը ուներ երկու կատու, որոնք ամեն օր վաղ առավոտյան արթնացնում էին իրենց տիրոջը: Որպեսզի երկու կատուներն էլ (թե՛ մեծը և թե՛ փոքրը) կարողանային բակ վազել առանց անհանգստացնելու իրեն, Նյուտոնը դռան վրա յուրաքանչյուր կատվի չափով անցք բաց արեց: Երբ հետևյալ օրը գիտնականն այդ մասին պատմեց իր հարևանին, սա ասաց.

— Մեկ մեծ անցքը բավական էր. այդտեղով կարող էին երկու կատուներն էլ անցնել:

— Ճի՛շտ որ,— բացականչեց Նյուտոնը,— դա մտքովս բոլորովին չէր անցել:



## ԱՍՏՂԱԳԵՏԻ «ՀՈՒՅՍԸ»

Անգլիական ականավոր աստղագետ Վիլյամ Գերշելը մի անգամ ծանր հիվանդացավ: Նա վախեցավ, որ կմեռնի: Հիվանդի մոտ եկավ քահանան և սկսեց հանգստացնել նրան, հավատացնելով, որ մեռնելն այնքան սարսափելի չէ, քանի որ գոյություն ունի անդրշիրիմյան աշխարհ:

— Հիանալի՛ է,— բացականչեց գիտնականը, ձևացնելով, որ հավատում է քահանային,— վերջապես ես կկարողանամ տեսնել լուսնի հակառակ կողմը:

## ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՍԽԱԼ

Շվեդացի նշանավոր քիմիկոս Շեելեն, որը հայտնագործել է քլորը, արտակարգ համեստ մարդ է եղել: Այն ժամանակ, երբ ամբողջ Եվրոպան հիացած էր նրանով, իր հայրենիքում ոչ ոք չէր ճանաչում գիտնականին: Նա լուռ ու մունջ աշխատում էր Կեպինգ փոքր քաղաքում որպես դեղագործ:

Մի անգամ Շվեդիայի թագավորը ուղևորություն կատարեց Եվրոպայում, որի ընթացքում նա ամենուրեք լսում էր Շեելեի անունը: Եվ թագավորը, որոշեց շքանշանով պարգևատրել մեծ գիտնականին: Եղավ հրամանը, բայց քանի որ հռչակավոր գիտնականին ոչ ոք չէր ճանաչում, շքանշանը տվեցին նույն ազգանունը կրող առաջին պատահած մարդուն: Իսկ Շեելեն շարունակում էր աշխատել իր դեղատանը, ոչինչ չիմանալով ինչպես իր փառքի, այնպես էլ պարգևատրության մասին:

## ԱՄԵՆԱԼԱՎ ՄԻՋՈՑԸ

Մի անգամ հավաքվածները խոսում էին լուսնոտության մասին. ներկաներից մեկը տառապում էր այդ հիվանդությամբ: Այդտեղ էր նաև գրող Մարկ Տվենը:

— Ես գիտեմ դրա դեմ պայքարելու ամենալավ միջոցը,— ասաց նա:

— Շատ եմ խնդրում բուժեք ինձ,— սկսեց աղերսել կրուցակիցը:

— Քնելուց առաջ մահճակալի մոտ փռած գորգի վրա հարկավոր է շաղ տալ գրասենյակային կոճգամներ,—խորհուրդ տվեց գրողը,— որպեսզի դուրս գալու ժամանակ դրանք ծակծկեն ոտքերդ և դու արթնանաս:



## ԲԱՑԱՌԻԿ ՏԱՂԱՆԴ

Անգլիացի ֆիզիկոս Թոմաս Յունգը բացառիկ ընդունակությունների տեր և բազմակողմանի զարգացած մարդ է եղել: Երկու տարեկան հասակում սովորել է կարդալ, վեց տարեկան հասակում բավական ծանոթ էր երկրաչափությանը:

Երբ լրացավ նրա տասնչորս տարին, նա արդեն կարդացել էր հունական ու հռոմեական նշանավոր գրողներին, գիտեր ֆրանսերեն, իտալերեն, եբրայերեն, պարսկերեն և արաբերեն: Տասնհինգ տարեկան հասակում Թոմասն սկսեց զբաղվել բնագիտությամբ և որոշեց սեփական ձեռքերով մանրադիտակ պատրաստել: Դրա համար նա սովորեց խառատի մասնագիտությունը: Միաժամանակ սկսեց աշխատություն գրել հունական փիլիսոփայության մասին: Քսան տարեկան էր նա, երբ լույս տեսավ նրա հոդվածն այն մասին, թե աչքն ինչպես է հարմարվում տարբեր լուսավորություն ունեցող պայմաններին: Քսաներկու տարեկան հասակում Յունգն ավարտեց բժշկական ֆակուլտետը, իսկ հինգ տարի հետո դարձավ պրոֆեսոր և հռչակվեց կարևոր հայտնագործություններով:

Յունգը համոզված էր, որ մարդը կարող է ամեն բան սովորել, միայն թե ցանկանա: Նա կարող էր նվագել իրեն հայտնի բոլոր երաժշտական գործիքների վրա, իսկ գեղանկարչությունն այնպես լավ գիտեր, որ նրան համարում էին ժամանակի ամենագիտակ մարդկանցից մեկը: Թոմաս Յունգը զբաղվում էր նաև օպտիկայով, աստղագիտությամբ, ֆիզիոլոգիայով, բժշկությամբ և այլ գիտություններով: Նա ելույթներ էր ունենում նաև կրկեսում որպես ձեռնածու, բացի այդ, հիանալի քայլում էր լարի վրայով: Նրա ելույթը միշտ էլ ջերմությամբ է ընդունվել կրկեսի հանդիսականների կողմից:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Ճանապարհորդություն դեպի ապագայի քաղաքը
2. Ճարտարապետի աշխատանոցում . . . . . . 1
3. Ուտոպիստների երազանքը 3
4. Մեկ օր Լուսնաշենում — ՅՈՒ. ՋԵՐԶԱՆԻՆՈՎ . . . . 4
5. Ինչ բան է մուրը . . 8
6. Թաղիքաշ . . . . . 9
7. Յանցզիի կոկորդիլոսները 9
8. Ջելսոմինոյի արկածները — ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ . . . 10
9. Երկաթե Տիգրանը . . 13
10. Հարցրու՝ կպատասխանենք 14
11. Հայաստանի հավքերը — ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ . . . . 16
12. Նշանավոր մարդկանց կյանքից . . . . . 19
13. Ժամանց


Շապիկի առաջին էջը՝ նկ. ՎԱՉԷ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Երեխանե՛ր, ձեզանից շատերը «Պիոներին» բաժանորդագրվել են միայն 6 ամսով։ Այդ նշանակում է, որ այդպիսիներն այլևս ամսագրի հաջորդ համարները չեն ստանա, եթե, իհարկե, հետևյալ ամիսների համար նորից չբաժանորդագրվեն։ Իսկ բաժանորդագրվել անհրաժեշտ է։ Շատ ու շատ հետաքրքիր նյութեր են տպագրվելու ամսագրի հաջորդ համարներում։ Շարունակվելու է «Ջելսոմինոն խաբեբաների աշխարհում» հեքիաթը, որի տպագրությունը կավարտվի միայն 1964 թվականի առաջին կեսում։

Շտապեցեք բաժանորդագրվել «Պիոներ» ամսագրին։

Բաժանորդագրվել կարելի է յուրաքանչյուր ամսից։

**Այս համարի հետ տրվում է հավելված։**






## ԽԱՉԲԱՌ — ԹՌՉՈՒՆՆԵՐ

Ուղղահայաց

1. Թռչուն է նա, ոտքերը ուժեղ, փետուրներն են շատ շքեղ։ 2. Երկարակյաց թռչուն (կամ թռչունների արքան)։ 3. Թռչուն, որը որսի է դուրս գալիս գիշերները։ 5. Հայաստանում շատ տարածված թռչուն։ 6. Թռչուն, որը ձու է ածում ուրիշի բնում։ 7. Թռչուն, որը չի թռչում և ապրում է անապատում։ 9. Ջրադուշակ թռչուն։ 10. Թռչուն, որը երգում է իր մահվան ժամին։ 12. Բառեր շուտ սովորող թռչուն։ 15. Ընտանի թռչուն։

Հորիզոնական

2. Գարնան ավետաբեր թռչուն։ 4. Թռչուն, որին նվիրված է Դոդոխյանի հանրահայտ բանաստեղծությունը։ 5. Թռչուն, որի անունով Կոմիտասը երգ ունի։ 8. Խաղաղության սիմվոլ։ 11. Թռչուն, որին Մ. Գորկին օգտագործել է իր ռևոլյուցիոն գրվածքներում։ 13. Թռչուն, որը և կաթնասուն է։ 14. Գիշատիչ թռչուն։ 16. Ընտանի թռչուն։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 10118 Պատվեր՝ 898։ Տպաքանակ՝ 14400։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 1/VI 1963 թ.։ ՀՍՍՌ կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ., № 91։

Գինը 20 կ.




ԳՐԻԳՈՐ ՅԱՂՋՅԱՆ

# ԾՆՆԴՅԱՆ ՕՐ





ԴՊՐՈՑԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ



ԳՐԻԳՈՐ ՅԱՂՋՅԱՆ

# ԾՆՆԴՅԱՆ ՕՐ

ԿՈՄԵԴԻԱ ՄԵԿ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՄԲ

(Երեխաների և նրանց ծնողների համար)

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՔ

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՏԻԳՐԱՆ — Ֆաբրիկայի դիրեկտոր՝ 40—45 տարեկան

ՄԱՐԳԱՐԻՏ — Նրա կինը՝ 35—40 տարեկան

ՊԵՐՃ — Նրանց որդին՝ 14 տարեկան

ԳԱՐԵԳԻՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ — Նրանց հարևանը՝ պրոֆեսոր, գեղագործ, 60 տարեկան

ԱՐՄԵՆ — Պերճի դասընկերը

Նկարիչ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ

Գործողությունը տեղի է ունենում Երևանում:
Մեր օրերն են:

Լավ կահավորված, ընդարձակ հյուրասենյակ՝ Կարապետյանների բնակարանում: Թանձր վարագույրները համարյա ամբողջովին փակել են պատուհանները: Ձնայած արևոտ օրվան, սենյակում կիսախավար է:

Դռան զանգ:

Հարևան սենյակից՝ բարձր տրամադրությամբ, հսկա ծաղկեփունջը ձեռքին, գալիս է Մարգարիտը:

ՄԱՐԳԱՐԻՏ — Հիմա՛... հիմա՛... (Ճապում է միջանցք: Հեռախոսի զանգ: Մարգարիտը բաց է անում դուռը) Համեցե՛ք, պրոֆե՛սոր... (Հեռախոսի կողմը) Հիմա՛... հիմա՛: (Մոտենում, վերցնում է լսափողը) Ալլո՛, լըսում եմ... ալլո՛... ալլո՛... Դե՛հ, թողեք հիմարությունը, պատասխանեցեք, լսում եմ... ալլո՛... լսեցե՛ք, պատասխանելո՞ւ եք, թե՞ ոչ... ալլո՛... (շպրտում դնում է լսափողը):

ԳԱՐԵԳԻՆ — (Մտնում է) Հարգանքներս, տիկին Մարգարիտ:

ՄԱՐԳԱՐԻՏ — Չէ՛, սա արդեն չափազանց է... երրորդ անգամ է զանգահարում են, վերցնում եմ լսափողը և ոչ մի ձայն... Ներեցե՛ք, կարծես բան ասացիք:

ԳԱՐԵԳԻՆ — Ե՞ս... ո՛չ, բարևեցի:

ՄԱՐԳԱՐԻՏ — Բարև՛ ձեզ: Խելք չեն թողնում մարդու գլխում: Փչացել է, պրոֆե՛սոր, բոլորովին փչացել է:

ԳԱՐԵԳԻՆ — Ներեցե՛ք, ո՞ւմ նկատի ունեք...

ՄԱՐԳԱՐԻՏ — Մի՞թե պարզ չէ. մեր նոր սերունդը...

ԳԱՐԵԳԻՆ — Ախ, սերո՞ւնդը... դա՛, այսպես ասած, ընդհանրացնել չի կարելի:

ՄԱՐԳԱՐԻՏ — Ի սեր աստծո, հիշու՛ մի՛ պաշտպանեք, բոլորն էլ մի ծառի պտուղ են:

ԳԱՐԵԳԻՆ — Այո՛, բայց, եթե չեմ սխալվում, ձեր տղան էլ է մտնում այդ նոր սերնդի մեջ:

ՄԱՐԳԱՐԻՏ — Համեմատեցի՛ք դուք էլ: Երանի չէ՞ր բոլորը Գերճիկիս նման լինեին: (Հեռախոսի զանգ: Մարգարիտը վերցնելով լսափողը՝ դիմում է Գարեգինին) Նստեցե՛ք, նստեցե՛ք: (Հեռախոսով) Ալլո՛, լսում եմ... ալլո՛... ալլո՛... (Հանկարծ՝ համբերությունը կորցրած) Սա խուլիգանություն է, եթե մեկ էլ զանգ տվեցին, միլիցիա կըկանչեմ... անպե՛տք: (Լսափողը աղմուկով տեղն է դնում): Ահա ասում եք, կարո՞ղ է Գերճիկս այսպիսի բան անել... Մարդ կխելագարեցնեն:

ԳԱՐԵԳԻՆ — Դուք լսափողը մի՛ վերցրեք:

ՄԱՐԳԱՐԻՏ — Ինչպե՞ս չվերցնեմ, սպասում եմ զանգի, Գերճը պետք է հայտնի, թե քանի հոգի են գալու:

ԳԱՐԵԳԻՆ — Ներեցեք, ովքե՞ր են գալու...

ՄԱՐԳԱՐԻՏ — Ինչպե՞ս... Տիգրանը չի՞ ասել ձեզ:



ԳԱՐԵԳԻՆ — Նա միայն խնդրեց ժամը հինգին անցնել ձեզ մոտ:

ՄԱՐԳԱՐԻՏ — Զարմանալի մարդ է: (Ծաղիկները տեղավորելով) Այսօր մի փոքրիկ խնջույք ունենք, պրոֆեսոր:

ԳԱՐԵԳԻՆ — Խնջո՞ւյք, վատ չէ, սիրելիս: Եվ ի՞նչ առիթով:

ՄԱՐԳԱՐԻՏ — Է՜խ, դուք, պրոֆե՜սոր, և դեռ հարևան եք... 1948 թվականի այս օրն ո՞վ է ծնվել։

ԳԱՐԵԳԻՆ — Ո՞վ... Երևի դո՞ւք այսինքն, ներեցեք, դա անհնարին է... կարծեմ 48 թվականին ասացիք... ձեր որդի՞ն։

ՄԱՐԳԱՐԻՏ — Բա էլ ո՞վ։ Այսօր Գերճիկս ուղիղ տասնչորս տարեկան դարձավ։

ԳԱՐԵԳԻՆ — Ախ, այո՜, իհա՜րկե, ներեցե՜ք։ (Ելնում է, սեղմում նրա ձեռքը) Այդ դեպքում շնորհավորում եմ, տիկին Մարգարիտ...

ՄԱՐԳԱՐԻՏ — Շնորհակալությո՜ւն, պրոֆե՜սոր։

ԳԱՐԵԳԻՆ — Իսկ ո՞ւր է ինքը, հանցավորը...

ՄԱՐԳԱՐԻՏ — Դպրոց է գնացել, վերջին օրն է։ Փոխադրվում է ութերորդ։

ԳԱՐԵԳԻՆ — Ուրեմն կրկնակի հոբելյար է... հարկավոր է նվեր պատրաստել։

ՄԱՐԳԱՐԻՏ — Ո՛չ, ո՛չ... Իսկական խնջույքը վաղն ենք անում, իսկ այսօր այնպես, մի թեթև... Գերճիկս կանչելու է իրենց դասարանից մի քանիսին, որպեսզի ծանոթանանք, տեսնենք՝ ով ինչ է ներկայացնում իրենից... Ձեզ էլ Տիգրանը դրա համար է կանչել։

ԳԱՐԵԳԻՆ — Թույլ տվեք, ինչի՞ համար... որ տեսնեք, թե ինչ եմ ներկայացնում ինձանի՞ց։

ՄԱՐԳԱՐԻՏ — Ո՛չ, ի՜նչ եք ասում, կանչել է, որ օգնեք մեզ ընտրել, թե նրանցից ովքեր են արժանի, որոնց հետ թույլ տանք Գերճիկին ընկերություն անել...

ԳԱՐԵԳԻՆ — Ներեցե՛ք, բայց, եթե չեմ սխալվում, Գերճի տարիքի տղաներն իրենք են ընկերներ ընտրում։

ՄԱՐԳԱՐԻՏ — (Ծիծաղելով) Ուրեմն թողնենք, որ արժեցող-չարժեցողի հետ շփվի՞, վատ ազդեցությունների՞ ենթարկվի... Էլ ինչի՞ համար ենք ծնող կոչվում։

ԳԱՐԵԳԻՆ — Այո՛, բայց...

ՄԱՐԳԱՐԻՏ — Չէ՛, պրոֆեսոր, դուք չգիտեք։

Տարվել եք ձեր գրքերով ու չեք նկատում, թե ինչ է կատարվում հիմա։ Գերճիկիս նման տղային, հենց միայն նախանձից, կարող են շեղել ճիշտ ճանապարհից։

ԳԱՐԵԳԻՆ — Նախանձի՞ց...

ՄԱՐԳԱՐԻՏ — Իհա՜րկե։ Տեսնում են, որ թե՛ ընդունակություններով, թե՛ գեղեցկությամբ իրենցից մի քանի գլխով բարձր է, ու քիչ է մնում պայթեն։

ԳԱՐԵԳԻՆ — Թույլ տվեք։ Ինձ թվում է, որ...

ՄԱՐԳԱՐԻՏ — Իզուր մի՛ վիճեք, պրոֆեսոր, եթե չիմանամ՝ չեմ ասի։ Գերճիկիս դեռ երեք տարեկան հասակից վախենում էի դուրս բերել, որ աչքով չտան... Ինչո՞ւ եմ հեռու գնում, հենց այն դպրոցում, ուր առաջ սովորում էր՝ հասար կա՞ր։ Հիմա էլ տեղափոխվել է այստեղ ու միայն «գերազանցներ» է ստանում... (Նկատելով ներս մտնող Գերճին) Ինչո՞ւ ուշացար, ստուգումից ի՞նչ ստացար։

ԳԵՐՃ — (Անտարբեր ձևանալով) Ստուգողակա՞նից... (Գարեգինին) Բարև՛ ձեզ։



ԳԱՐԵԳԻՆ — Բարև՛, սիրելիս... Կշնորհավորեմ վաղը. (Ցույց տալով Մարգարիտին) այդպես է կարգադրված...

ՄԱՐԳԱՐԻՏ — Գերճի՛կ ջան, ի՞նչ ստացար...

ԳԵՐՃ — (Իբր չհասկանալով) Ինչի՞ց։

ՄԱՐԳԱՐԻՏ — Հանրահաշվից, ինչի՞ց։

ՊԵՐՃ — *Հանրահաշվի՞ց... ի՞նչ պիտի ստանայի... «հի՛նգ»:*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Գարեգինին) *Տեսնո՞ւմ ես...* (Պերճին) *արի պաչեմ, բալի՛կ ջան...* (Համբուրում է) *Հապա ինչո՞ւ չզանգահարեցիր:*

ՊԵՐՃ — *Իսկ ինչո՞ւ զանգահարեի...*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Հազար անգամ խնդրեցի, չէ՞, որ քննությանդ հանձնելուդ պես հեռախոսով ինձ հայտնես... Ի՞նչ ես ծիծաղում, քեզ բան եմ ասում,* (Պերճը նորից ծիծաղում է) *հետո՞, Պերճի՛կ:* (Նույնպես սկսելով ծիծաղել) *Պրոֆեսոր, դուք սրանից բան հասկանո՞ւմ եք:*

ԳԱՐԵԳԻՆ — (Ժպտալով) *Բա՞ն... այո՛, այո՛, իհարկե... Նա կարծեմ ծիծաղում է:*

ՊԵՐՃ — (Հազիվ զսպելով ծիծաղը: Գարեգինին) *Ես փորձելու համար ուզում էի զանգահարել ու ասել, որ «երկու» եմ ստացել... բայց հենց որ մաման պատասխանեց, ծիծաղս բռնեց ու էլ չկարողացա խոսել... Չորս անգամ զանգահարեցի ու չորս անգամ էլ նույնը...* (Մորը, ծիծաղելով) *Մանավանդ, որ դու սկսում էիր ջղայնանալ ու հայհոյել* (ծիծաղում է):

ՄԱՐԳԱՐԻՏ — (Լրջանալով) *Ուրեմն այդ դո՞ւ էիր... Դու, ի՞նչ է, որոշել ես ներվերս քայքայե՞լ... Ես պայթում եմ ջղայնությունից, թե «խուլիգներ», իսկ դու...*

ՊԵՐՃ — *Ի՞նչ անեմ, ես մեղավո՞ր եմ, որ ծիծաղս գալիս էր:*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Ժպտալով, Գարեգինին) *Ահա... ի՞նչ ասեմ սրան. երեխայական չարաճճիություն:*

ԳԱՐԵԳԻՆ — *Այո՛, իհա՛րկե: Իսկ դուք կարծում էիք ջղայնացնողն ուրիշն է և խուլիգանություն է... կարծեմ այդպես ասացիք:*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Պերճին) *Հա՛, քանի՞ հոգու ես կանչել:*

ՊԵՐՃ — *Ասացի, որ ամբողջ դասարանը գա:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Ամբողջ դասարա՞նը, խելագարվե՞լ ես, ի՞նչ է... չասացի՞, որ կարգին ծնողներ ունեցողներից մի երկուսին բերես:*

ՊԵՐՃ — *Անհարմար էր, բոլորն այնտեղ էին:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Եվ բոլորն էլ կգա՞ն:*

ՊԵՐՃ — *Բոլորը, բացի Առաքելյան Սուրենից:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Առաքելյան Սուրենն ո՞վ է:*

ՊԵՐՃ — *Մեր դասարանի տղաներից:*

ԳԱՐԵԳԻՆ — *Ո՞րի հետ կռվել եք երևի...*

ՊԵՐՃ — *Չէ՛, նեղացավ ինձանից, կարծես պարտական էի իրեն:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Ի՞նչ էր ուզում որ...*

ՊԵՐՃ — *Ստուգողականը դեռ չէր սկսվել, նա մոտեցավ, թե՝ «Վախենում եմ՝ հենց չիմացածս խնդիրներից ընկնեն ու «երկու» ստանամ»: Հետո ցույց տվեց մի խնդիր և ասում է՝ ինչպես պիտի լուծել:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Հետո՞...*

ՊԵՐՃ — *Էլ ի՞նչ հետո, ասացի, որ ժամանակ չունեմ:*

ԳԱՐԵԳԻՆ — *Թո՛ղ տվեք, հենց այդպես էլ ասացի՞ք...*

ՊԵՐՃ — *Իհարկե... ուզում էր «հինգ» ստանալ, թող պարապեր՝ ինչպես հարկն է, ես այդպես էլ ասացի իրեն:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Շատ ճիշտ ես արել:*

ՊԵՐՃ — (Գարեգինին) *Ուզում է իմ սովորեցրածով խնդիր լուծել ու հետո պարծենալ, թե ինքն էլ է «հինգ» ստացել...*

ԳԱՐԵԳԻՆ — (Զննող հայացքը Պերճի վրա բևեռելով) *Այդպե՞ս, այդպե՞ս... հիանալի է... ի՞նչ կա որ, դա հետաքրքիր է... և ի՞նչ ստացավ նա:*

ՊԵՐՃ — *Չգիտեմ, ես հանձնեցի ու տուն եկա:*

Մտնում է Տիգրանը

ՏԻԳՐԱՆ — (Տրամադրությունը բարձր է) *Մարգո՛, այնտեղ, խոհանոցում, ինչ-որ բան է այրվում, հոտն ընկել է միջանցքը:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Վա՜յ, մոռացել եմ տոլմայի տակ կրակն իջեցնել* (վազում է խոհանոց):

ՏԻԳՐԱՆ — (Ծիծաղելով նրա հետևից) *Կամա՛ց, կամա՛ց, կնիկս, կնիկ ջան:* (Գարեգինին) *Հարգանքներս, պրոֆե՛սոր: Ներեցեք, որ սպասեցրի:* (Սեղմում է ձեռքը): *Մի բան էի խոստացել մեր իշխանազնին:* (Գրպանից փոքրիկ տուփ հանելով: Պերճին) *Արի՛, արի՛, ստացի՛ր ժամացույցդ... «Մի՜ր», վերջին արտադրություն:* (Գարեգինին) *Հետաքրքիր բան է կյանքը, պրոֆե՛սոր, մի քանի տարի առաջ ո՞ւմ մտքով կանցներ, որ հասարակ կոշկակար Տիգրան Կարապետյանը ֆաբրիկայի դիրեկտոր կդառնա ու այսպիսի աղա տղա կունենա:* (Ժամացույցը տալով Պերճին) *Ա՛ռ, բալի՛կ ջան... բոլորովին չվախենաս, քանի ես կենդանի եմ, ինչ լեզուդ պտտի՝ կունենաս...* (Գարեգինին՝ ծիծաղելով) *Չափածո ասացվեց, պոետները թող չպարծենան: Հա՜...* (Մարգարիտի գնացած կողմը) *Մարգո՛, Մարգո՛...*

ՊԵՐՃ — (Գարեգինին աչքով անելով, ժամա-



ցույցը մեկնում է հորը) *Վերցրո՛ւ, պապ, իզուր ես առել։*

ՏԻԳՐԱՆ — *Ինչո՞ւ։*

ՊԵՐՃ — *«Երկու» եմ ստացել։*

ՏԻԳՐԱՆ — *«Երկո՞ւ»... Օյիններդ թող, դու «երկու» ստացող պտուղ չես։*

ԳԱՐԵԳԻՆ — *Իսկ եթե նա իրո՞ք «երկու» է ստացել...*

ՏԻԳՐԱՆ — (Պերճին) *Հա՞, չե՞ս խաբում։*

ՊԵՐՃ — *Չէ՛, խնդիրը չկարողացա լուծել։*

ՏԻԳՐԱՆ — *Հետո՞... բա դա վայե՞լ է քեզ։*

ԳԱՐԵԳԻՆ — *Իսկ ինչո՞ւ վայել չէ։*

ՏԻԳՐԱՆ — *Ինչո՞ւ... այսինքն ինչպե՞ս թե «ինչու»... որովհետև... դե, որովհետև* (Ներս մտնող Մարգարիտին) *Մարգ, Պերճուկը «երկու» է ստացել։*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Հանկարծակիի եկած) *Ի՞նչ։ Ի՞նչ «երկու»... հարբա՞ծ ես, թե՞ երազի մեջ։*

ՏԻԳՐԱՆ — *Ինքն է ասում։*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Ինքը շատ բան է ասում. կլոր «հինգ» է ստացել, «հի՛նգ»* (Տիգրանը նայում է Պերճին):

ՊԵՐՃ — (Ծիծաղելով գրկում է հորը) *Խաբեցի՜, ուզեցի տեսնել ինչ կասես...*

ՏԻԳՐԱՆ — (Համբուրելով նրան) *Ախ դու, սատանա՛,* (Գարեգինին) *ախր, ես էլ զարմացա, իմ տղան «հինգից» պակաս չպիտի ստանա։* (Մարգարիտին) *Հարգելի կողակից, քանի ջահելները չեն հավաքվել, մի-մի հատ կոնյակ թավազա արա, պրոֆեսորի հետ անուշ անենք։*

ԳԱՐԵԳԻՆ — *Ո՛չ, ո՛չ, շնորհակալություն. ես կոնյակ չեմ խմում։*

ՏԻԳՐԱՆ — *Մոռացել էի... դե լավ, էն քաղցր գինուց տուր։* (Մարգարիտը պահարանից հանում է ճենապակյա ամանով գինի ու խորտիկներ: Մինչ այդ, Տիգրանը կանխում է առարկելու փորձ անող Գարեգինին) *Ո՛չ մի ձայն, պրոֆեսոր, թե չէ, արեւ վկա, խիստ կնեղանամ։*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Գինին դնելով սեղանին, ամուսնուն) *Սփռոցին չթափես... պրոֆեսոր, խոսքս ձեզ չի վերաբերում, չվիրավորվեք։ Ինձ ներեցեք, այնտեղ նորից չայրվի։* (Պերճին) *Արի՛, բալիկ ջան, արի՛ տեսնենք քանի՞ հոգի են գալու, ի՞նչ ենք անելու...* (Գնում են):

ՏԻԳՐԱՆ — (Վերցնելով գինու ամանը) *Թեպետ արդեն կոնյակով եմ սկսել, բայց ձեր խաթրին...*

ԳԱՐԵԳԻՆ — (Չթողնելով, որ նա բաժակները լցնի) *Սպասեցե՛ք, հետո՛ կխմենք... Նախ, ներեցե՛ք ինձ, որպես ձեր բարեկամը, կուզենայի մի երկու խոսք ասել։*

ՏԻԳՐԱՆ — (Հետաքրքրված, գինու ամանը դնելով սեղանին) *Լսում եմ, պրոֆեսոր։*

ԳԱՐԵԳԻՆ — *Բանն այն է, սիրելի՛ս, որ ձեր*

*տղան այսօր, իմ հաստատ համոզմամբ, իրոք «երկու» է ստացել։*

ՏԻԳՐԱՆ — *Չեմ հասկանում... Մարգո՞...*

ԳԱՐԵԳԻՆ — *Սպասեցե՛ք... խոսքս այսօրվա ստուգողականի մասին չէ։ Նա «երկու» է ստացել այսպես ասած, որպես մարդ։*

ՏԻԳՐԱՆ — *Որպես մա՞րդ...*

ԳԱՐԵԳԻՆ — *Այո՛, սիրելիս, որպես մարդ, որպես ընկեր... հրաժարվել է օգնել իր ընկերոջը, որ նա էլ «հինգ» ստանա։ Եվ ամենից վատը... այո՛, այո՛, ամենից վատը Պերճի մերժման դրդապատճառն է։*

ՏԻԳՐԱՆ — *Ո՞րն է։*

ԳԱՐԵԳԻՆ — *Նա պարզապես չի կամեցել, որ բացի իրենից մեկ ուրիշն էլ «հինգ» ստանա։*

ՏԻԳՐԱՆ — *Չի՞ կարող պատահել...*

ԳԱՐԵԳԻՆ — *Ինքն ասաց... վախեցել է, որ իր այդ ընկերը կարող է հետո պարծենալ, թե ինքն էլ է «հինգ» ստացել, և, այսպես ասած, պարծենալու մենաշնորհից զրկել իրեն։*

ՏԻԳՐԱՆ — *Ես նրան ցույց կտամ...* (Դեպի դուրս) *Պե՛րճ, Պե՛րճ...*

ԳԱՐԵԳԻՆ — *Սպասեցե՛ք, սիրելիս, ես դեռ բոլորը չեմ ասել։ Իմ կարծիքով, այստեղ դուք և տիկին Մարգարիտն ավելի եք մեղավոր, քան ձեր տղան։*

ՏԻԳՐԱՆ — *Ինչո՞վ ենք մեղավոր։*

ԳԱՐԵԳԻՆ — *Նրանով, որ մեկուսացրել եք իր շրջապատից։ Ինձ, օրինակ, ներեցեք, շատ է հետաքրքրում, թե սա ինչ հատուկ կոնկուրս եք կազմակերպել այսօր՝ նրան արժանի ընկերներ ընտրելու համար։ Ո՞րն է, այսպես ասած, այն չափանիշը, որով որոշելու եք, տիկին Մարգարիտի ասած «արժեցողն ու չարժեցողը»։*

ՊԵՐՃ — (Լսվում է ձայնը միջանցքից) *Արի՛, Արմեն։*

ԳԱՐԵԳԻՆ — *Գնանք ձեր սենյակը, այս մասին արժե ավելի հանգամանորեն խոսել։*

ՏԻԳՐԱՆ — *Ես, ախր, պրոֆե՛սոր...*

ԳԱՐԵԳԻՆ — *Գնա՛նք, գնա՛նք...* (Տանում է հարևան սենյակը)։

ՊԵՐՃ — (Մտնում է Արմենի հետ) *Արի՛, արի՛... այստեղ ոչ ոք չկա, նստի՛ր։*

ԱՐՄԵՆ — (Նստելով) *Ի՞նչ նստելու ժամանակ է...* (սենյակն ուսումնասիրելով) *հիանալի բնակարան ունեք։ Հա՛, հիմա ասեմ, թե ինչու եմ եկել... ոչ ոք չի՞ լսի։*

ՊԵՐՃ — *Ո՞վ պիտի լսի։*

ԱՐՄԵՆ — *Ո՞վ գիտի, հայրդ, մայրդ... ախր այնպիսի բան է, որ... Երդվի՛ր, որ ոչ ոքի չես ասի, թե ես եմ ասել։*

ՊԵՐՃ — *Իսկ ի՞նչ է որ...*

ԱՐՄԵՆ — *Չէ՛, առաջ երդվիր։*

ՊԵՐՃ — *Երդվում եմ։*

ԱՐՄԵՆ — *Դե՛հ, հիմա լսիր...* (Մոտենում է նրա ականջին) *առաջինը դու գիտես, որ ես մյուսների նման չեմ, իսկական ընկերոջ նման սիրում եմ։ Ճիշտն ասա, գիտե՞ս։*

ՊԵՐՃ — *Գիտեմ։*

ԱՐՄԵՆ — *Բնավորություն է այդպես, ազնիվ խոսք, սիրում եմ ընկերություն անել։ Իմ մասին ասում են, թե հա՛մ տաքին եմ փչում, հա՛մ սառին, այսինքն երկերեսանի եմ։ Ավելի լավ է, մարդ երկու երես ունենա, քան ոչ մի հատ. այսինքն ոչ ոքի*



չսիրի։ Խոսքս քո մասին չէ, չնեղանա՛ս։

ՊԵՐՃ — Չեմ նեղանում, սա՛ս, ի՞նչ է պատահել։

ԱՐՄԵՆ — Հա՛, ասեմ. ուրեմն առաջինը՝ իսկական ընկերոջ նման սիրում եմ քեզ, երկրորդը՝ մյուսների նման չեմ, իսկ երրորդը՝ ում ինչ գործն է, թե ով ում հետ է ընկերություն անում։

ՊԵՐՃ — (Համբերությունը սպառելով) Արմե՛ն...

ԱՐՄԵՆ — Մի՛ խանգարի, կխառնեմ... ինչ էի ասո՞ւմ... տեսա՞ր, մոռացա։ (Նկատելով սեղանին մնացած տուփը, վերցնում է, բացում) Օ՛յ, ի՜նչ հիանալի ժամացույց է։ Հայրիկի՞նդ է։

ՊԵՐՃ — Իմն է, հայրիկս է նվեր առել...

ԱՐՄԵՆ — Լսիր, ի՜նչ հիանալի հայրիկ ունես։ Բարով մաշես... ժամացույցի մասին եմ ասում, ուրիշ բան չկարծես... (Պերճն անհամբերության նշաններ է ցույց տալիս) Հա՛, ի՞նչ էի ասում...

ՊԵՐՃ — (Ժամացույցը նրա ձեռքից վերցնելով ու սեղանին դնելով) Առաջինը, որ սիրում ես ինձ, երկրորդը մյուսների նման չես, երրորդը, որ ոչ ոքի գործը չէ, ով ում հետ է ընկերություն անում։

ԱՐՄԵՆ — Լսիր... Հիանալի հիշողություն ունես։

ՊԵՐՃ — Իսկ դու ինձ ասելու բան չունե՞ս։

ԱՐՄԵՆ — Իհարկե, ունեմ, թե չէ, ինչո՞ւ պիտի գայի։

ՊԵՐՃ — Կարող է՝ ուղղակի եկել ես ծննդյան օ՞րս շնորհավորելու։

ԱՐՄԵՆ — Տես, բոլորովին մոռացել էի, շնորհավորո՛ւմ եմ (սեղմում է նրա ձեռքը), ցանկանում եմ հիանալի առողջություն, հաջողություն և երկար կյանք... Հա՛, երջանկությունը մոռացա, երջանկություն էլ եմ ցանկանում։ Միայն դու այնտեղ դպրոցում չասես, որ եկել եմ ու շնորհավորել ծնունդդ, լա՞վ։

ՊԵՐՃ — Ինչո՞ւ։

ԱՐՄԵՆ — Բա այսքան ժամանակ է, ի՞նչ եմ ասում...

ՊԵՐՃ — Ի՞նչ ես ասում։

ԱՐՄԵՆ — Ախր այսօր քո գնալուց հետո այնպիսի մի աղմուկ բարձրացավ դպրոցում, այնպիսի մի աղմուկ, որ... լսի՛ր, երդվիր, որ ոչ ոքի չես ասի։

ՊԵՐՃ — Երդվում եմ, երդվում, ի՞նչ աղմուկ։

ԱՐՄԵՆ — Հասկանո՞ւմ ես, Առաքելյան Սուբենը խնդիրը բոլորովին չէր լուծել։

ՊԵՐՃ — (Զարմանքից ժպտալով) Հետո՞...

ԱՐՄԵՆ — Էլ հետո մնա՞ց։ Ամբողջ դասարանը հավաքվեց գլխին։ Պարզվեց, որ ստուգողականից առաջ քեզ խնդրել է, որ բացատրես մի խնդրի լուծում, դու էլ հրաժարվել ես, ստուգողականն էլ հենց այն խնդրից էր, որ քեզ ցույց է տվել։

ՊԵՐՃ — Իսկ ինչո՞ւ պիտի բացատրեի, պարտավո՞ր եմ, ի՞նչ է։

ԱՐՄԵՆ — Սպասի՛ր, ինչպես ասացի՞ն... հա՛, վախեցել ես, թե բացի քեզանից, ուրիշներն էլ «հինգ» կստանան։

ՊԵՐՃ — Եթե կարող են, թող ստանան, ես ոչ ոքի չեմ արգելում։

ԱՐՄԵՆ — Բա ես ի՞նչ եմ ասում։ Մի խոս-



թով, տղաները որ դա իմացան, շատ ջղայնացան։ Ժողովի նման բան սարքվեց. Աշոտը թե՝ պիտի հարցը լուրջ դնել... քո հարցը այսինքն։

ՊԵՐՃ — Ի՞նչ իրավունքով։

ԱՐՄԵՆ — Չգիտեմ։ Ասում է. «Քննադատությունը չօգնեց, ոչ որով ու ոչնչով չի հետաքրքրվում»։ Դա այսինքն։ «Բոլորի վրա բարձրից է նայում, մի ամբողջ անգամ գովասանք ստանալու համար պատրաստ է...» ինչպե՞ս ասաց... տես, մոռացա։ Մի խոսքով Բաբկենն էլ ասաց. «Ով ինչպես ուզում է, իսկ ես... (ինքը այսինքն, չկարծես, թե ես) ես, — ասում է,— այդ էգոիստի ծնունդը շնորհավորելու չեմ գնա, որովհետև,— ասում է,— ավելի լավ է չծնվեն այդպիսիները»... քեզ նմանները այսինքն։



ՊԵՐՃ — Նա, իհարկե, կուզենա, որ բոլորն իր նման անտաղանդ լինեն, որ ինքը երևա։

ԱՐՄԵՆ — Տես, ամենակարևորը մոռացա, Զարուհի մայրիկը... մեր հավաքարարն այսինքն, նա էլ քեզանից բողոքեց. ասում է. «Խնդրեցի մի ճար անի մկների դեմ, խոստացավ օգնի ու ականջի հետևը գցեց»... խնդրանքն այսինքն, մկները չկարծես։

ՊԵՐՃ — Նրա մկների համար էլ եմ ես մեղավո՞ր։

ԱՐՄԵՆ — Մի խոսքով, սկսեցին վիճել ու համարյա բոլորն այն կարծիքը հայտնեցին, որ հարկավոր է մեծամասնության համար պատժել... քեզ այսինքն ու քո ծննդյան տոնին չգալ։ Մենակ ես ու Լուսիկը...

ՊԵՐՃ — Ո՞ր Լուսիկը։

ԱՐՄԵՆ — Պապիկյանը, որ քեզ անցած անգամ ժողովում քննադատեց... ի՞նչ էի ասում, տե՛ս, մոռացա... հա՛, Պապիկյան Լուսիկն ասաց, թե «բոյկոտ անել չի կարելի. ունքըն ուղղելու փոխարեն, աչքը կհանենք»։ Ազնիվ խոսք, առաջինը ես էի մտածում ասել, բայց որ նա առաջ ընկավ, էլ ես ի՞նչ ասեի, պիտի ասեին՝ աղջկա ասածներն ես ասում։

ՊԵՐՃ — Հետո՞...

ԱՐՄԵՆ — Էլ ի՞նչ հետո, չգալու կողմը բոլորը քվեարկեցին, իսկ գալու օգտին՝ մենակ Լուսիկը... Մեկ էլ ես այսինքն։

ՊԵՐՃ — (Ջղային) Կարող են չգալ. ոչ ոք չի խնդրում։

ԱՐՄԵՆ — Բա ես ի՞նչ եմ ասում։ Մենակ թե Լուսիկը իր խոսքին կանգնեց ու ասաց՝ գնանք պիոներ ջոկատավարի մոտ, խորհուրդ հարցնենք։ Ես էլ տեսա, որ նորից Լուսիկն ինձանից առաջ ընկավ, վազեցի, որ քեզ զգուշացնեմ։ Դեհ, ցտեսությո՛ւն, հարկավոր է դպրոց վազել, աչքներին երևալ, թե չէ կարող են կարծել, թե եկել եմ... քեզ մոտ այսինքն... (Պերճը լուռ մտածում է) Ցտեսությո՜ւն, կարծեմ ոչինչ չմոռացա... Չէ՛, չեմ մոռացել։ Ցտեսություն, Պերճ, ես, որպես ընկեր, ուրիշ բան չկարծես... (Գնում է և մի պահ հետո միայն գլուխը մտցնում դռնից ներս) Հա՛, քիչ մնաց մոռանայի. ոչ որի բան չասես... Ցտեսությո՜ւն։ (Անհետանում է)։

ՊԵՐՃ — (Մենակ է) Խոզե՛ր... անպե՛տք նախանձնե՛ր...

ՏԻԳՐԱՆ — (Հարևան սենյակից, ջղային) Մարգո՛, Մարգո՛։

ՊԵՐՃ — (Դեպի միջանցք) Մամա՛, պապան է կանչում... (Ինքնիրեն) Մի բան պիտի անել, որ բոլորին զարմացնի, ատամները ջրի...

ՏԻԳՐԱՆ — (Հարևան սենյակից) Մարգո՛։

ՊԵՐՃ — (Դեպի միջանցք) Մամա՛։

ՄԱՐԳԱՐԻՏ — (Միջանցքից) Իմացա՛, խուլ չեմ։

ՊԵՐՃ — (Դեպի հարևան սենյակը) Գալիս է, պա՛պ։ (Ինքնիրեն) Զարուհի մայրիկին ամենից շատ կհավատան, հարկավոր է նրա բերանը փակել։

ՏԻԳՐԱՆ — (Հարևան սենյակից) Մարգո՛։

ՄԱՐԳԱՐԻՏ — (Հայտնվելով միջանցքի դռներում) Ի՞նչ է, ձենը գլուխը գցել... (դեպի հարևան սենյակը գնալով)։ Գալի՛ս եմ, գալի՛ս (գնում է)։

ՊԵՐՃ — (Մենակ է, խոսում է ինքնիրեն) Կարծես պարտադիր է լավություն անելը։ Չեմ անում ու վե՛րջ, ինչքան ուզում եք նախանձից պայթեցեք։ (Նկատելով հարևան սենյակից եկող Գարեգինին) Պրոֆեսոր, արդեն գնո՞ւմ եք։

ԳԱՐԵԳԻՆ — Ես, մի րոպեով միայն, սիրելի՛ս, ձեր հոր համար գիրք եմ բերելու։

ՊԵՐՃ — Գի՞րք, ինչո՞ւ։

ԳԱՐԵԳԻՆ — Ինչպե՞ս թե ինչու... որպեսզի կարդա։

ՊԵՐՃ — Նա միայն հիվանդանալիս է կարդում։

ԳԱՐԵԳԻՆ — Այո՞... ուրեմն այս անգամ որպես բացառություն առողջ ժամանակ է կարդալու։

ՊԵՐՃ — Պրոֆեսոր, մի րոպե... (Գարեգինը դառնում է դեպի նա: Պերճը մոտենում է, խոսում՝ գլուխը կախ) Պրոֆե՛սոր, դուք միայն լաբորատորիայո՞ւմ եք փորձեր անում, թե՞ տանն էլ...

ԳԱՐԵԳԻՆ — Եթե հարկավոր է լինում, տանն էլ։ Իսկ ինչո՞ւ է դա քեզ հետաքրքրում։

ՊԵՐՃ — Ինձ մի քիչ մկնդեղ է հարկավոր...

ԳԱՐԵԳԻՆ — Մկնդե՞ղ, բայց ինչի՞ համար։ Հուսով եմ, որ ձեր տանը մկներ չկան։

ՊԵՐՃ — Մեզ համար չէ։ Մեր դպրոցում, տեխնիկական աշխատող մի ծեր կին կա, նրա համար։ Հասկանո՞ւմ եք։ Նրանց տանը մկներ կան, խնդրել էր, որ մի ճար գտնեմ։ Վաղուց էր խնդրել։ Հարկավոր է օգնել, անհարմար է։

ԳԱՐԵԳԻՆ — Իրոք որ անհարմար է։ Երբ օգնություն են խնդրում մարդուց, հարկավոր է պատրաստակամ լինել։ Վաղը, սիրելի՛ս, որևէ փոշի կպատրաստեմ՝ տար (ուզում է գնալ)։

ՊԵՐՃ — (Բռնելով նրան) Չէ՛, չէ՛, պրոֆեսոր, այսօր է հարկավոր, հենց հիմա՛։

ԳԱՐԵԳԻՆ — Հենց հիմա՞... Չէ՞ որ այսօր քո ծննդյան օրն է, և դու տանը՞ պետք է լինես։

ՊԵՐՃ — Հետաքրքիրը հենց այն է, որ իմ ծննդյան օրը... հասկանո՞ւմ եք, այսօր դպրոցում մի բան է պատահել... այն տղան, որի մասին պատմեցի, ստուգողականից «երկու» է ստացել։

ԳԱՐԵԳԻՆ — Դա վատ է, իհարկե...

ՊԵՐՃ — Իսկ մեր դասարանի աղջիկները, փոխանակ նրան մեղադրելու, ամբողջ մեղքը ինձ վրա են գցել, որ իբր ես միայն իմ մասին եմ մտածում։ Կտեսնեմ, բոլորի ներկայությամբ դեղը կտամ Զարուհի մայրիկին, թող տեսնեն, որ ուրիշների մասին էլ եմ մտածում ու ավել-պակաս չխոսեն։

ԳԱՐԵԳԻՆ — Այդպե՞ս... Լա՛վ է, լա՛վ։ Որոշել ես, ուրեմն, զինաթափե՞լ նրանց։

ՊԵՐՃ — Նրանք, իհարկե, շատ կուզենային, որ ես իրենց դասարանը չտեղափոխվեի։

ԳԱՐԵԳԻՆ — Ինչո՞ւ... Նախանձո՞ւմ են։

ՊԵՐՃ — Չգիտեմ։

ԳԱՐԵԳԻՆ — Չգիտե՞ս... իսկ ես գիտեմ. չեն նախանձում։ Նախանձել կարող են մեկը, երկուսը, բայց բոլորը նախանձ լինել չեն կարող, սիրելիս։

ՊԵՐՃ — Իսկ ինչո՞ւ չեն սիրում ինձ։ Նույնիսկ որոշել են չգալ իմ ծննդյան տոնին։

ԳԱՐԵԳԻՆ — Որոշել են չգա՞լ... ահա թե ուր է հասել բանը։ Ուրեմն... նստենք, սիրելիս... ուրեմն, ասում ես, քեզ չե՞ն սիրում։ Իսկ դու ինչպե՞ս, սիրո՞ւմ ես նրանց։

ՊԵՐՃ — Չգիտեմ, համենայն դեպս, ոչ մեկին վատություն չեմ արել։

ԳԱՐԵԳԻՆ — Իսկ լավությո՞ւն։

ՊԵՐՃ — Դա պարտադիր չէ։

ԳԱՐԵԳԻՆ — Բայց ցանկալի է։ Ապրել մարդկանց մեջ, մարդկանցից առանձնացած, հնարավոր չէ, սիրելիս։ Քեզ զարմացնում է, որ ընկերներդ չեն սիրում քեզ։ Դեհ, թեկուզ և հենց այն տղան, որին մերժել ես օգնել, մի՞թե կարող է սիրել քեզ...

ՊԵՐՃ — *Իր գործն է, կարող է չափել:*

ԳԱՐԵԳԻՆ — *Ես համենայն դեպս, կգերադասեի ընկերներից սիրված լինել: Եվ հետո, որքան գիտեմ, մարդը հոգեկան բավարարություն է ստանում, երբ շրջապատող մարդիկ հարգում են իրեն: Այ, եթե ժամանակին օգնած լինեիր ծեր տեխնիկական աշխատողին, նա այսօր երախտագիտությամբ կհիշեր քո անունը:*

ՊԵՐՃ — *Այն ժամանակ զբաղված էի... միևնույն չէ՞, հիմա կտանեմ փոշին:*

ԳԱՐԵԳԻՆ — *Այո՛, բայց հիմա դու այդ անում ես ոչ թե նրան օգնելու, այլ քո ընկերների բերանը փակելու համար...*



ՏԻԳՐԱՆ — (Հարևան սենյակից լսվում է գոռոցը) *Թողնելո՞ւ ես վերջացնեմ ասելիքս, թե՞ չէ...*

ԳԱՐԵԳԻՆ — (Նայելով այն կողմը, որտեղից լսվում է ձայնը) *Խնդրեցի առանց բարկանալու բացատրել*: (Պերճին) *Մտածի՛ր, սիրելի՛ս: Ամենահզոր կաղնին անգամ, եթե շրջապատված չէ ծառերով, հեշտությամբ կարող է զոհ դառնալ տարերքին... Իսկ փոշին ես հիմա կբերեմ* (գնում է):

ՊԵՐՃ — (Նրա հետևից նայելով) *Լավությո՞ւն... Լավություն անողին բոլորն էլ կսիրեն: Եթե կարգին մարդիկ են, ինչո՞ւ են սպասում, որ լավություն անեմ:*

Հարևան սենյակից արտասվելով գալիս է Մարգարիտը:

ՏԻԳՐԱՆ — (Դուրս գալով նրա հետևից) *Ե՛տ արի, ասում եմ:*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Արտասվելով) *Ամեն ինչում ե՛ս եմ մեղավոր...*

ՏԻԳՐԱՆ — *Չէ՛, ե՛ս եմ մեղավոր...*

ՊԵՐՃ — *Ի՞նչ է պատահել:*

ՏԻԳՐԱՆ — (Խեթ նայելով նրան) *Քո գործը չէ՛:* (Մարգարիտին) *Արի՛...* (Գնում է սենյակը):

ՊԵՐՃ — (Մարգարիտին, որ արտասվելով գնում է դեպի ամուսնու սենյակը) *Ի՞նչ է պատահել, մա՛:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Խելքը թռցրել է. ինձանից կպել...* (Գնում է: Պերճն ուզում է գնալ մոր հետևից, սակայն Գարեգինի գալը կանխում է նրան):

ԳԱՐԵԳԻՆ — (Գալիս է, թևի տակ՝ Մակարենկոյի ժողովածուն, ձեռքին՝ թղթով փոշի) *Ահա՛, սիրելիս, կարող եք տանել...* (տալիս է փոշին):

ՊԵՐՃ — (Վերցնելով) *Շնորհակալությո՛ւն:*

ԳԱՐԵԳԻՆ — *Իսկ եթե ես լինեի քո փոխարեն, ամբողջ դասարանին ձեռնոց նետելու տեղ, կաշխատեի հաշտության ճանապարհ գտնել: Կգնայի և բոլորի ներկայությամբ այն տղայից ներողություն կխնդրեի:*

ՊԵՐՃ — *Ներողությո՞ւն... ո՛չ մի դեպքում: Ի՞նչի համար:*

ԳԱՐԵԳԻՆ — *Դե՛հ, դա արդեն քո գործն է, սիրելիս, ես իմ կարծիքն եմ ասում* (ուզում է գնալ): *Չմոռանաս, որ շատ զգույշ պետք է լինել, փոշին ամենաուժեղ թույներից է, մեկ գրամն անգամ փիղ է սպանում:*

ՊԵՐՃ — (Վախեցած՝ փոշուն նայելով) *Այո՞:*

ԳԱՐԵԳԻՆ — *Իհարկե... այդքանը թող լուծի մեկ լիտր հեղուկի մեջ, միևնույն է, ինչ հեղուկ կլինի... հետո թող հացի կտորներ թրջի ստացված լուծույթով ու դնի բների մոտերքում: Կհիշե՞ս:*

ՊԵՐՃ — *Կհիշեմ: Հենց հիմա կտանեմ ու կբացատրեմ:*

ԳԱՐԵԳԻՆ — *Իսկ ավելի լավ կլիներ, եթե ընկերներիդ մոտ գնայիր և, այսպես ասած, մաքուր սրտով...*

ՊԵՐՃ — *Ես ներողություն չեմ խնդրի... ավելի շուտ համաձայն եմ մեռնել:*

ԳԱՐԵԳԻՆ — *Այո՞... Համենայն դեպս, մտա-*

ծի՛ր (գնում է Տիգրանի սենյակը):

ՊԵՐՃ — (Մենակ է: Նայում է պատի ժամացույցին) *Դեռ դպրոցում կլինեն...* (պատրաստվում է գնալ, նկատում է նոր նվիրած ժամացույցը) *Չկապե՞մ: Իհա՛րկե, թող տեսնեն ու պայթեն նախանձից:* (Շտապ լարում է և ժամացույցը կապում թևին: Ապա Գարեգինի բերած փոշին վերցնում է, որ գնա և հանկարծ մտահոգվում է) *Իմ մասին բամբասելիս Զարուհի մայրիկը ներկա է եղել ու ինքն էլ է զանգահարել... Հետո՞... եթե հանկարծ տանեմ ու չվերցնի, թե՝ արդեն ուշ է:* (Կոտրված) *Չէ՜, վտանգավոր է. կարող է բոլորովին խայտառակվեմ, հարկավոր է ուրիշ բան մտածել* (մտախոհ քայլերով), *այնպիսի բան, որ բերանները բաց մնան:* (Կանգնում է հայելու դեմ, նայում է, ինքն իրեն խղճում) *Ի՞նչ են ուզում ինձանից: Ինչո՞վ եմ մեղավոր, որ իրենցից լավն եմ* (խեղճացած նստում է, մեքենայորեն բացում թուղթը և նայում թունավոր փոշուն): *Զարմանալի է. սրա մեկ գրամը կարող է փիղ սպանել... փի՞ղ:* (Հղացած մտքից փայլող աչքերով ելնում է տեղից) *Գտա՜...* (ուրախ) *Իհա՛րկե, գտա՛... հարկավոր է ձևացնել, թե ուզեցել եմ ինքնասպանություն գործել:* (Ծիծաղելով) *Ա՛յ թե իրարանցում կլինի, ամբողջ քաղաքով մեկ աղմուկ կբարձրանա:* (Փոշին դատարկում է բաժակի մեջ, ճենապակյա ամանից գինի լցնում վրան և խառնում: Խոսում է խառնելով) *Ամբողջ դասարանին կմեղադրեն... Կատակ բան չէ, ամենալավ սովորողն եմ:* (Լույսի դիմաց պահելով՝ նայում է բաժակի պարունակությանը) *Պատրաստ է...* (մտածկոտ) *հիմա ինչպե՞ս անեմ. կանչեմ մամային, ասեմ, որ բաժակի մեջ թույն կա ու ձևացնեմ, թե ուզում եմ խմել... Չէ՛, բան դուրս չի գա: Այստեղ իրար կխառնվեն, բայց ոչ ոքի չեն ասի, որ չխայտառակվենք... Իսկ եթե սկզբից շտապ օգնությանը զանգահարեմ ու հետո խմե՞մ... Չէ՛, չէ՛, շտապ օգնության վրա հույս դնել չի կարելի: Հապա ի՞նչ անեմ:*

ՄԱՐԳԱՐԻՏ — (Մտնելով և գինով լի բաժակը Պերճի ձեռքին տեսնելով) *Այդ ի՞նչ ես անում:*

ՊԵՐՃ — (Վախեցած դնում է բաժակը սեղանին և, ափի մեջ տրորելով փոշու թուղթը, շտապ թաքցնում) *Ե՞ս... ես այնպես... ուզում էի...*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Շատ բան էիր ուզում: Այդ էր պակաս, որ հիմա էլ հարբեցողության դասը հասնես: Եվ ինչի՞ համար, ասացեք խնդրեմ, ոչ որ չի գալու... իսկ ո՞վ է նրանց սպասում, որ վախեցնում են չգալով:*

ՊԵՐՃ — *Դու ի՞նչ գիտես, որ չեն գալու:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Իսկ ինչո՞ւ չպիտի իմանայի... Պրոֆեսորն ասաց. «Վե՛րջ, էս օրվանից այս տանն ամեն ինչ իր տեղն է ընկնելու»: Հասկացա՞ր:*

ՊԵՐՃ — (Զարմացած՝ մոր արտասովոր խոսելաձևից) *Հասկացա՛:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Դե՛հ, այդ պատուհանները բա՛ց արա, արևի երես տեսնենք: Բա՛ց արա ասում եմ:* (Պերճը բացում է վարագույրները, սենյակը ողողվում է արևի պայծառ ճառագայթներով) *Ա՛յ այդպես... իսկ հիմա իջիր առաջին հարկը և այնտեղից սկսած, մեկ-մեկ տները մտնելով, բարձրացիր մինչև հինգերորդը: Կասես բոլորին, որ հայրիկդ շատ է խնդրում, այսօր ժամը 8-ին գան մեր տուն, միասին ընթրելու: Գնա՛, հայրիկդ այդպես է ուզում:*

ՊԵՐՃ — *Ինչո՞ւ...*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Քո գործը չէ, ինչ որ ասում են անմիջապես կատարի՛ր, առանց այն էլ այսօր շան լափ թափեցին գլխիս, թե քեզ սխալ եմ դաստիարակում:*

ՊԵՐՃ — *Բայց ինչո՞ւ է բոլորին կանչում:*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Իսկ ի՞նչ կուզեիր, որ ընկերներդ վաղը պարծենան, թե մենք չգնացինք ծննդյան տոնին ու Պերճն իր ծնողների հետ բուի նման մենա՞կ մնաց տանը... Գնա՛, գնա՛, ես գիտեմ ինչ եմ անում. զուռնադհոլով էլ եմ կանչելու:*

ՊԵՐՃ — (Ուրախ փարվելով մորը) *Մամա՜ ջան, դու տաղա՜նդ ես, հանճա՜ր...*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Դե՛, դե՛, առանց կեղծավորության, հերիք է, ինչքան երես տվեցի քեզ: Սրանից հետո վե՛րջ... Դուրս հրաման է,* (դուրս մղելով) *վազքով մա՛րշ: Շո՛ւտ:*

ՊԵՐՃ — (Ուրախ ծիծաղելով: Զինվորականի նման) *Կա՛: Վազքով մարշ:* (Դուրս է վազում թռչկոտելով) *Թող նախանձից պայթեն...*

ՄԱՐԳԱՐԻՏ — *Սո՛ւս, հայրիկդ կիմանա:* (Նրա հետևից) *Տես բակից այստեղ լինես...* (Ինքնագոհ քթոցները սրբելով) *Էհ՛, սա էլ խիստ... Չէ՛, պրոֆեսորը ճիշտ էր. էսպես է հարկավոր: Ուրիշ ժամանակ որ*

խնդրելով մեռնեի, չէի կարողանա ուղարկել մարդ կանչելու: (Վերցնելով գինով լի բաժակը) Դրա՞ն նայիր, մի թիզ չկա, ուզում էր հարբելով մոռանալ... (Բաժակի գինին դատարկում է նորից իր տեղը՝ ճենապակյա ամանի մեջ: Խոսում է և անձեռոցիկով չորացնում բաժակը): Թարս օր էր այսօր, լավ է, լավ վերջացավ:

Մտնում են Գարեգինն ու Տիգրանը:

ՏԻԳՐԱՆ — (Գալիս է՝ Գարեգինի թևը բռնած: Շարունակում է մյուս սենյակում սկսված զրույցը) Այնպես որ, պրոֆե՛սոր, դուք, իհարկե, ճիշտ եք, բայց հազար ու մի պատճառ կա...

ԳԱՐԵԳԻՆ — Ներեցե՛ք (Մարգարիտին) Գերճը գնաց դպրո՞ց, թե՞...

ՄԱՐԳԱՐԻՏ — Ի՞նչ դպրոց, այնպես գոռացի վրան, որ ձայնը պատի գույն դառավ: Դուք կարծում եք, թե ես չե՞մ կարող խիստ լինել... չեմ ուզում երեխան ընկճված մեծանա:

ՏԻԳՐԱՆ — Լա՛վ, լա՛վ, նորից չսկսենք: Հարևաններին կանչելու ուղարկեցի՞ք:

ախորժակ չունեմ:

ՏԻԳՐԱՆ — Չէ՛, չէ՛, ո՛չ մի խոսք, խիստ կվիրավորվեմ: Նստեցեք այստեղ (Նստում է սեղանի մոտ): Մարգո՛, մի բան բեր: (Մարգարիտը գնում է: Տիգրանը նստում է Գարեգինի դիմաց, սեղանի մոտ): Գիտե՞ք ինչն է պատճառը, որ այդպես դողում եմ Գերճուկիս համար:

ԳԱՐԵԳԻՆ — Իհարկե, գիտեմ, շատ եք սիրում:

ՏԻԳՐԱՆ — Դա մի կողմ թողած: Իմ կյանքն, ախր, զրկանքներով ու տառապանքով է անցել, ու հիմա ուզում եմ, որ տղաս ոչ մի բանի կարիք չզգա: Հասկանում էի, որ սխալ եմ անում, բայց անում էի: (Ճենապակյա ամանից գինի լցնելով բաժակները) Հետո, մեղքս ինչ թաքցնեմ, դիրեկտոր դառնալս գործը բոլորովին փչացրեց: Աշխատանքով տարվեցի ու ամեն ինչ մոռացա (ցույց տալով ուտելիք բերող Մարգարիտին), իսկ ամենից շատ, իհարկե, սա է մեղավոր...

ՄԱՐԳԱՐԻՏ — Ահա՛, նորից ես:



ՄԱՐԳԱՐԻՏ — Հապա ի՞նչ անեի:

ՏԻԳՐԱՆ — Դե՛, նստեցեք, պրոֆե՛սոր, նստենք մի կտոր բան ուտենք, դուք էլ մեզ հետ տանջվեցիք այսօր:

ԳԱՐԵԳԻՆ — Ճշմարիտն ասած, ես ուտելու

ՏԻԳՐԱՆ — Լա՛վ, լա՛վ, մի՛ փքվիր, որ ինքնաքննադատություն է, թող մինչև վերջը լինի... Մի բաժակ էլ քե՛զ համար բեր:

ՄԱՐԳԱՐԻՏ — Ես չեմ ուզում:

ՏԻԳՐԱՆ — (Խիստ) Բե՛ր, ասում եմ: (Մարգա-

րիտը բաժակ է դնում սեղանին: Տիգրանը դիմում է Գարեգինին, միաժամանակ մատուցելով) Բաստուրմա վերցրե՛ք, պրոֆե՛սոր, տնական է, իմ ձեռքով եմ համեմել...

ԳԱՐԵԳԻՆ — (Վերցնելով) Շնորհակալություն:

ՏԻԳՐԱՆ — (Գինի լցնելով Մարգարիտի բաժակը) Նստի՛ր... նստի՛ր, ասում եմ: (Մարգարիտը խռովկան նստում է: Տիգրանը բարձրացնում է գինով լի բաժակը): Վերցրե՛ք բաժակները... (Մարգարիտը և Գարեգինը նույնպես բարձրացնում են լի բաժակները): Եկեք այս բաժակը խմենք ու ցանկանանք, որ չարը անցած լինի...

ՄԱՐԳԱՐԻՏ — Ամե՛ն... (Ուզում է խմել):

ՏԻԳՐԱՆ — Սպասի՛ր խոսքս վերջացնեմ: (Մարգարիտը դժգոհ սպասում է: Տիգրանը շարունակում է): Թող այսօրվա օրը՝ Պերճուկիս ծննդյան օրը թե՛ նրա համար, թե՛ ինձ ու Մարգոյի համար, իսկական ծննդյան օր լինի: Էսօրվա օրը սառը ջրի նման գլխիս իջավ ու ինձ սթափեցրեց,



աչքերս բացեց: Թե կյանքում ես ձեր արած լավությունը մոռանամ, թող այս արդար գինին թույն դառնա ինձ համար... (Ուզում է խմել, բայց շուրթերի մոտից բաժակը ետ է բերում և դիմում կնոջը): Երդվի՛ր:

ՄԱՐԳԱՐԻՏ — Թող թույն դառնա: (Խմում են):

ՏԻԳՐԱՆ — (Մինչև հատակը դատարկելով համբուրում է բաժակը) Օխա՜յ... (Մյուսներին) Մինչև վե՛րջը, մինչև վե՛րջը, ո՛չ մի կաթիլ չթողնեիք մեջը: Ա՛յ էդպես... Անուշ լինի:

ՄԱՐԳԱՐԻՏ — Անուշ լինի: (Դատարկ բաժակը դնում է սեղանին):

ԳԱՐԵԳԻՆ — Շնորհակալությո՛ւն: (Նույնպես դատարկ բաժակը դնում է սեղանին):

ՊԵՐՃ — (Մտնելով վերջին պահին և տեսնելով դատարկ բաժակները: Սարսափած կծկըվում է դռան մոտ և ճչում) Մամա՜...

Բոլորը հանկարծակի եկած նրան են նայում:

ՏԻԳՐԱՆ — Ի՞նչ կա...

ՊԵՐՃ — Մամա՜, այն բաժակի միջի գինին ի՞նչ արիր:

ՄԱՐԳԱՐԻՏ — Քո ի՞նչ գործն է, ի՞նչ ես գոռում:

ՊԵՐՃ — (Մոտենում է, քափահարում մոր օձիքը) Չէ՜, չէ՜, ասա՛, ի՞նչ արիր գինին:

ՄԱՐԳԱՐԻՏ — Ի՞նչ ես կպել ինձ... Թափեցի...

ՊԵՐՃ — (Հանգստացած) Թափեցի՞ր: Օ՜խ...

ՏԻԳՐԱՆ — Ի՞նչ է պատահել...

ՊԵՐՃ — Գինին թունավոր էր, մեջը շատ ուժեղ թույն կար:

ՏԻԳՐԱՆ — Ո՞ր գինին էր թունավոր, ինչե՞ր ես դուրս տալիս...

ՊԵՐՃ — Ուզում էի ինքնասպանություն գործել... բաժակի մեջ գինի լցրի ու... թույնը խառնեցի... (Բարձրաձայն լաց է լինում) Մոռացա՜, գնացի՜:

ՄԱՐԳԱՐԻՏ — [4](Հանկարծ գոռալով) Վա՜յ... վա՜յ... (բռնում է փորը ու սկսում է ճոլինման պտտվել սենյակում, միաժամանակ ըն-

չալով) Շտապ օգնությո՜ւն, շո՜ւտ-շո՜ւտ, բոլորս թունավորված ենք... Վա՜յ...

ՊԵՐՃ — (Գոռում է) Օգնեցե՜ք...

ԳԱՐԵԳԻՆ — (Շփոթված) Սպասեցե՛ք, սպասեցե՛ք:

ՏԻԳՐԱՆ — Ոչինչ չեմ հասկանում...

ՄԱՐԳԱՐԻՏ — (Լեզուն կապ ընկած) Ես... ես... լըց... լըց... նորից գրաֆ... գրաֆինի մեջ:

ՏԻԳՐԱՆ — Ի՞նչ...

ՄԱՐԳԱՐԻՏ — Մեռա՜նք, բոլորս մե՜... (հանկարծ ճչալով) վա՜յ... ցավերը, ցավերն սկսվեցին:

ԳԱՐԵԳԻՆ — Սպասեցե՛ք, սպասեցե՛ք...

ՏԻԳՐԱՆ — (Փորը բռնած) Օ՛յ, օ՜յ... ես գիտեի, որ վերջը ինձ սպանելու եք... (Մարգարիտը շարունակ գոռալով պտտվում է սենյակում):

ԳԱՐԵԳԻՆ — Սպասեցեք, սպասեցեք, իրար հասկանանք:

ՊԵՐՃ — (Բաժակներից մեկի մեջ, շտապ գինի լցնելով) Բոլորի պատճառը ես եմ, ես էլ ձեզ հետ կմեռնեմ... (Խմում է և փորը բռնած գոռում) Օգնեցե՜ք...

ՄԱՐԳԱՐԻՏ — Օգնեցե՜ք...

ՏԻԳՐԱՆ — (Մի ձեռքով փորը բռնած, մյուսով հեռախոսի լսափողը) Շտապ օգնությո՜ւն...

ԳԱՐԵԳԻՆ — (Առույգ սեղմելով հեռախոսի լծակը, գոռում է այնպես, որ մյուսներին լռեցնի) Սպասեցե՛ք, լսեցե՛ք վերջապես... (Մի պահ ամեն մեկը մի անկյունում կծկըված լռում են ու նրան նայում) Դուք թույն չե՛ք խմել, հասկացե՛ք: (Պերճին) Դու իմ տված փոշի՞ն ես լցրել գինու մեջ, թե՞ ուրիշ որևէ բան:

ՊԵՐՃ — Ձեր տված փոշին:

ԳԱՐԵԳԻՆ — (Մյուսներին) Մի՞թե ձեզ թվում է, թե ես կարող եմ ամեն խնդրողի թույն տալ, մանավանդ, երբ խնդրողի գործերն այնքան էլ փայլուն չեն... Ո՛չ, սիրելիներս, ինչում կամենում եք, կարող եք ինձ մեղադրել, միայն ոչ հիմարության մեջ, կտրականապես հրաժարվում եմ դրանից...

ՄԱՐԳԱՐԻՏ — Ուրեմն դո՞ւք...

ԳԱՐԵԳԻՆ — Ես պարզապես ուզեցի ստուգել՝ նա իր ընկերների հետ հաշտվելու ուղի՞ն կբռնի, թե՞...

ՊԵՐՃ — Ուրեմն դուք ինձ թույն չէի՞ք տվել:

ԳԱՐԵԳԻՆ — Իհարկե ո՛չ: Գինու մեջ քո խառնած փոշին, ամենասովորական շաքարի փոշի էր, ռահատ-լոխումի տակից դատարկված:

ՏԻԳՐԱՆ — (Քրտինքը սրբելով) Պրոֆեսոր ջա՜ն...

ՄԱՐԳԱՐԻՏ — Հարգելի պրոֆեսոր, դու մեր փրկարարն ես... (սկսում է երգել ու պարել):

ՊԵՐՃ — (Փաթաթվելով ու համբուրելով նրան) Գարեգին քեռի ջա՜ն...

ԱՐՄԵՆ — (Շտապ ներս ընկնելով) Պե՛րճ... Պե՛րճ... ներեցեք, դուռը բաց էր, տե՛ս, մոռացա ինչ պիտի ասեի... հա՛, հիշեցի, գալիս են... Ամբողջ դասարանով նվեր են առել ու գալիս են ծննդյան օրդ շնորհավորելու:

ՊԵՐՃ — Ինչպե՞ս թե գալիս են:

ԱՐՄԵՆ — Շատ հասարակ: Պապիկյան Լուսիկը հաղթեց: Ջոկատավարը, ընկեր Բարսեղյանն այսինքն, ասել է, թե ընկերոջը բոյկոտի ենթարկել չի կարելի, այսինքն քեզ, ինձ չկարծես... Ինչ պիտի ասեի՞... հա, ես առաջ վազեցի, որ ուրախացնեմ... (Դռան զանգ, աղմուկ): Նրանք են:

ՏԻԳՐԱՆ — Մարգո՛, ներս հրավիրիր նրանց էնպես, ինչպես մինիստրին կընդունեիր:

ՄԱՐԳԱՐԻՏ — (Ուրախ դեպի դուռը վազելով) Հիմա՜, հիմա՛... (Տիգրանն աշխատում է հնարավորին չափ կարգի բերել սենյակը):

ՊԵՐՃ — Գարեգին քեռի, ես Սուրենից ներողություն կխնդրեմ... բոլորի մոտ... Չէ՛, չէ՛... բոլորից ներողություն կխնդրեմ... բոլորից:

ԳԱՐԵԳԻՆ — Ա՛յ, սա արդեն, սիրելիս, իսկական ծննդյան օր է...

Միջանցքում մանկական բազմաձայն աղմուկ:

Վարագույր

# ՔԱՆԻ՞ ԲԱԴ





1. Հետաքրքիր է՝ ինչքա՞ն ենք կշռում ես ու Զալոն: Կշռաքարի փոխարեն նժարին դնենք, այ, այս դատարկ տակառները:

2. Այ քեզ կուգադիպությո՜ւն...

3. Զալոն ինչքա՞ն է ծանր բադերից: Պա՜հ, չորս անգամ:

4. Իսկ եթե Զալոյի կողքին դնեմ երկու բադ, ապա քանի՞ տակառ է պետք, որ նժարները հավասարվեն: Պա՜հ, երեք տակառ:





5. Մնում է պարզել, թե քանի՞ բադ է հարկավոր, որ հավասարվեն իմ քաշին: Երեխաներ, դա էլ ինքներդ որոշեք:



ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

1. Երաժշտական ստեղծագործության ներածական մասը: 2. «Անուշ» օպերայի հերոսներից: 3. Ձայնանիշ: 4. Ֆրանսիական կոմպոզիտոր, «Ֆաուստ» և «Ռոմեո և Ջուլիետա» օպերաների հեղինակը: 5. Հայկական բալետ: 6. Ադրբեջանական օպերա: 7. Ջ. Վերդիի օպերաներից, որը նվիրված էր Սուեզի ջրանցքի բացմանը: 8. Պար: 9. Գ. Եղիազարյանի բալետներից: 10. Երաժշտական ստեղծագործություն՝ մենակատար ձայնի համար: 11. Ֆրանսիական մեծ կոմպոզիտոր: 12. Երաժշտական նշան, որը երկարացնում է նոտան կես տոնով:

Կազմեց՝ Ս. ԱՂԱԲԵԿՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

### «ՊԻՈՆԵՐ» № 4

### ԾԱՂԻԿՆԵՐ

Խունուֆար, զանգակածաղիկ, խրիցուկ, անթառամ, ծովաշուշան, շուշան, նարգիզ, յասաման, ձնծաղիկ, կակաչ, մանուշակ, վարդ:

### ԳՐԱԿԱՆ-ԽԱՉԲԱՌ ՇԱԽԿԱԳԻՐ

Նովել, Անահիտ, Սահինյան, Սիամանթո, Սունդուկյան, Տատուրյան, պոեմ, Պարոնյան, «Պայքար», Իսահակյան, Մանվելյան:

### ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

1. Բերինգի: 2. Այրուբեն:

### ՀԵՏԱՔՐՔԻՐ ՀԱՇԻՎ

| | | |
|---|---|---|
| 5—3 | 13 հատ մեծ 65 կ. | 39 կ. |
| 15—20 | 2 հատ միջակ 30 կ. | 40 կ. |
| 2—10 | 2 հատ փոքր 4 կ. | 20 կ. |
| | 99 կ. | 99 կ. |

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ

Կարո Դոլբակյան (Երևան)
Անահիտ Ավագյան (Երևան)
Ռոզա Ղազարյան (Լենինական)
Սուսաննա Քոսյան (Ալավերդի)
Բոգդան Հովհաննիսյան (Կիրովական)
Ժաննա Սահակյան (Լենինական)
Ցոլիկ Մելքոնյան (Թալին)
Զոյա Բալաբեկյան (Կամո)
Լիդա Սուրենյան (Արտաշատ)
Ժաննա Մակարյան (Կամո)
Սերժիկ Մախլյան (Իջևան)
և շատ ուրիշներ:



